Medieval Greek Archival Documents about the Presence of Armenians on the Territory of the Byzantine Empire (11th-14th Centuries), by Hratch Bartikyan from *Patma-banasirakan handes [Historico-Philological Journal]* (Erevan, Armenia) 3(2003), pp. 87-130, in 44 pdf pages.

II

# ՀՈՒՆԱԿԱՆ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԱՐԽԻՎԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՏԱՐԱԾՔՈՒՄ ՀԱՅՈՑ ՆԵՐԿԱՅՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ (XI–XIV դդ.)

ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Սույն հոդվածի վերնագրում նշված հիմնահարցի վերաբերյալ քիչ չի գրված, բայց արվածը վերաբերում է Բյուզանդական կայսրության ծառայության մեջ աչքի ընկած հայազգի ազնվականներին՝ լինեն նրանք կայսրեր, քաղաքական, ռազմական, կրոնական, մշակութային գործիչներ և ուրիշներ: Իրողությունն ունի իր բացատրությունը: Բյուզանդական կայսրությունը, որպես այդպիսին, բազմազգ պետություն էր, որում, գլխավոր էթնիկ տարրից՝ հույներից հետո ամենամեծ դերը հայերն էին խաղում: Դա էլ ունի իր բացատրությունը: Բյուզանդիան Հռոմեական կայսրության ժառանգն էր, երկար դարեր նրա կազմում էր գտնվում Փոքր Հայքը, որի հայ հոծ բնակչությունը երկրի կյանքում զգալի դեր էր խաղում: Երկրորդ բացատրությունն այն էր, որ հայերը, նախ և առաջ ազնվականության ներկայացուցիչները, V–IX դդ. կորցնելով իրենց պետականությունը, այլազգի և այլակրոն պետությունների՝ Սասանյան պարսիկների և մահմեդական արաբների կողմից, ժամանակ առ ժամանակ ապաստան էին գտնում համակրոն Բյուզանդիայում և ծառայության մեջ մտնում այնտեղ:*

*Հարցին նվիրված վաղագույն աշխատանքներից է Կ. Տեր-Սահակյանի «Հայ կայսերք Բյուզանդիոնի» երկհատորյակը, որը ոչ այնքան գիտական հետազոտություն է, որքան ընթերցանության հանրամատչելի դիրք[1]: Հարցի վերաբերյալ արժեքավոր են անվանի հայագետ-բյուզանդագետ Նիկողայոս Ադոնցի դիտական հետազոտությունները, որոնք հրատարակված լինելով բազմաթիվ հայկական և օտար պարբերականներում, լույս են տեսել առանձին գրքերով՝ հայերեն և ֆրանսերեն[2]: Կարևոր են ազգությամբ հույն, ամերիկացի Պ. Խարանիսի փոքրածավալ գրքույկը,[3] ինչպես և հայազգի ուսումնասիրող Կիրիլ Թումանովի ընդարձակ հոդվածը[4]:*

*Հայ-բյուզանդական հարաբերություններին են վերաբերում արվեստագետ Սիրարփի Տեր Ներսեսյանի, գլխավորապես արվեստին վերաբերող մե-*

[1] *Կ. Տ ե ր - Ս ա հ ա կ յ ա ն. Հայ կայսերք Բյուզանդիոնի. հ. Ա–Բ, Վենետիկ, 1905:*

[2] *Ն. Ա դ ո ն ց. Պատմական ուսումնասիրություններ. Պարիս, 1948:* N. A d o n t z . Etudes Armeno-Byzantines. Lisbonne, 1965.

[3] P.C h a r a n i s. The Armenians in the Byzantine Empire. Lisboa, 1963 (*Պ. Խ ա ր ա ն ի ս. Հայերը Բյուզանդական կայսրության մեջ, թարգմանեց Հայկ Պերպերյան. Վիեննա, 1966*):

[4] C y r i l T o u m a n o f f. Caucasia and Byzantium. – "Traditio", 1971, N 27, p. 111-158.

նագրությունը և հոդվածների ժողովածուն[5]: Սակայն ամենից ընդարձակն ու համգամանալիցը, հարկավ, Ա. Պ. Կաժդանի մենագրությունն է, գրված բաղմաթիվ, հաճախ մեզ համար անմատչելի սկզբնաղբյուրների և հետազոտությունների հիման վրա[6]: Շատ բարձր գնահատելով վերջինիս կատարած աշխատանքը, պիտի հատուկ ընդգծել, որ այն ունի և թույլ կողմեր, որոնք շարադրանքի ընթացքում պիտի մատնացույց անենք: Թերությունների պատճառը հեղինակի հայերենին չտիրապետելու և հայկական աղբյուրներին սոսկ օտարալեզու թարգմանություններով ծանոթ լինելն է: Բավական է որևէ հետազոտող, անգամ սիրող այս կամ այն բացահայտ հայկական ծագում ունեցող գործչի մասին այլ կարծիք հայտնած լինի, նա նրան կհամարի «ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներից» սերող: Հարցը հասնում է աբսուրդի: Վասպուրականցի իշխան Խաչիկի որդի Ճնճղուկը, 1021 թ. գաղթից հետո, անցնելով բյուզանդական ծառայության, սկիզբ դրեց Ճնճղուկների բյուզանդական ազնվականական ընտանիքին, որոնցից հայտնի են բազում անձինք: Հունարենում «Ճ» տառի (և հնչյունի), «ը» գաղտնավանկի չգոյության պատճառով, Ճնճղուկները Բյուզանդիայում հայտնի են որպես Τζιντζουλούκης Ցինցուլուկներ (ընդ որում «ց» հնչյունն էլ երկու տառով են ստանում «τζ»): Քանի որ մի ռումինացի պատմաբան, սրի աչքին բազում բյուզանդական ազնվականական ընտանիքներ ազգությամբ ռումինացի են տեսնվում, անգամ Կոմնենոսները, (վրաց պատմաբան Գոզալիշվիլին նրանց վրացի էր համարում), Ցինցուլուկներին ևս ռումինացի մկրտեց, ստուգաբանեց quinque lupi (քվինքուէ լուպի՝ ըստ լատիներեն արտասանության, և չինքուէ լուպի՝ ըստ իտալերենի «հինգ դայլ») ևահա դա բավական էր, որպեսզի Ա. Կաժդանը Ճնճղուկներին զետեղեր «ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներ» խորագրով գլխում: Նա, ջանալով «չեզոք» դիրք գրաված լինել հայ-վրացական գիտական վեճերում, շրջանառության մեջ դրեց «այսպես կոչված հայ-իբերական ընտանիքներ» հասկացությունը, և այդպիսիք համարեց վրացադավան (քաղկեդոնիկ) հայերին՝ Թոռնիկյաններին, Բակուրյաններին, Վխկացիներին, Ապուքապներին և այլոց: Ստորև, շարադրանքի ընթացքում այդ մասին դեռ խոսք կլինի:

Սույն հոդվածի ուսումնասիրության առարկան տարբերվում է վերոհիշյալներից: Խոսքը սոսկ բյուզանդական ծառայության մեջ ներգրավված հայազգի ազնվականական (դարերի ընթացքում անկասկած հունացած) ընտանիքներին չի վերաբերում, այլ գլխավորապես և անտարակույս հայ անձանց և բյուզանդական տարածքների հայ-բնակչության: Բյուզանդական սկզբնաղբյուրների և բյուզանդագիտական ուսումնասիրությունների

---

[5] S i r a r p i e D e r N e r s e s s i a n. Armenia and the Byzantine Empire. Cambridge, Massachusets, 1947. *Ն ո ւ յ ն ի*՝ Byzantine and Armenian Studies. T. I-II, Louvain, 1973. (*Օտար լեզվով լույս տեսած մի շարք հոդվածների հայերեն թարգմանությունը.— Հայ արվեստը միջնադարում. Երևան, 1975*):

[6] А. П. К а ж д а н. Армяне в составе господствующего класса Византийской Империи в XI-XII вв. Ереван, 1975 (*այսուհետև*՝ К а ж д а н. Армяне). *Հր. Աճառյանի Հայոց անձնանունների բառարանում բյուզանդական հայերի առանձին հիշատակությունները պատահական բնույթ են կրում, բացի այդ վերաբերում են անձնանուններին և ոչ տոհմանուններին:*

*մեր գրադարաններում առկա աղքատիկ ծավալը, ինքնըստինքյան հասկանալի է, հնարավորություն չի տալիս հարցը քննել իր ամբողջության մեջ և հայտնի չէ, թե երբ դա հնարավոր կլինի: Օգտագործելով մեր տրամադրության տակ առկա Ֆ. Միկլոշիցի և Յոզ. Մյուլլերի կողմից 1860-1890 թթ. Վիեննայում հրատարակված (և վերջերս Աթենքում վերահրատարակված) բյուզանդական շուրջ 3000 արխիվային արժեքավոր փաստաթղթերի վեցհատորյակը*[7]*, հարցը քննության է առնվում սոսկ դրանցում առկա նյութի շրջանակներում:*

*Ակադ. Հովսեփ Օրբելին նյութական մշակույթի առարկաները, այդ թվում վիմագիր արձանագրությունները, դրամները, արճճե կնիքները, շինությունները և այլն, որակում էր որպես աղբյուրներ, որոնք չեն ստում (*вещи не врут*): Նույն միտքն է արտահայտում հույն ականավոր բյուզանդագետ Ի. Է. Կարայաննոպուլոսն իր «Բյուզանդական պատմության աղբյուրները» ստվար աշխատության ընդհանուր ներածության մեջ: «Փաստաթղթերը,– գրում է նա,– հանդիսանում են Բյուզանդիայի պատմության կարևորագույն աղբյուրներից մեկը, հատկապես նրա ներքին պատմության որոշ հատվածների համար, և դա հասկանալի է, քանզի անմիջական աղբյուրներ են, որոնք անմիջական տեղեկություններ են հաղորդում իրենց ժամանակաշրջանի մասին»*[8]*: Եվ առաջինը հիշատակում է մեր սույն հոդվածում օգտագործված վեցհատորյակը: Ուստի սրանց թվին կարելի է դասել և շրջանառության մեջ դրվող նյութը: Եթե որևէ կալվածքի վաճառքի մասին փաստաթղթում ցույց է տրված, որ այն հյուսիսից և արևմուտքից սահմանակից էր հայերին և հայտնի է խնդրո առարկա կալվածքի որոշակի տեղադրությունը, ապա կասկած կա՞, որ այնտեղ գոյություն է ունեցել հայերից բաղկացած համայնք, այն էլ որոշակի ո՛ր թվականին և ո՛ր ամսին:*

*Խնդրո առարկա վեցհատորյակի առաջին երկու հատորները վերաբերում են Կոստանդնուպոլսի Տիեզերական Պատրիարքարանի 1315-1402 թթ. փաստաթղթերին (*Acta Patriarchatus Constantinopolitani MCCCXV - MCCCCII*), երրորդ հատորը՝ Հունաստանի և Իտալիայի հարցերը լուսաբանող հունական ակտերին (*Acta et Diplomata graeca Res Graecas Italasque Illustrantia*), չորրորդ, հինգերորդ և վեցերորդ հատորները՝ «Արևելքի վանքերի և եկեղեցիների փաստաթղթերին» (*Acta et Diplomata Monasteriorum et Ecclesiarum Orientis*): Այստեղ պետք է նշել, որ ուսումնասիրվող ժամանակաշրջանում Բյուզանդական կայսրության տարածքը և՛ Արևելքում, և՛ Արևմուտքում շատ էր փոքրացել: Հրատարակիչները թեև ցույց են տալիս, որ խոսքը «Արևելքի վանքերի և եկեղեցիների» փաստաթղթերի մասին է, այդ Արևելքն արդեն մեծամասամբ թուրքերի ձեռքում էր*[9]*: Հույներին էին մնացել Փոքր Ասիայի հյուսիս-արևելքում մի նեղ տարածք՝ Տրապիզոնի*

---

[7] Acta et Diplomata graeca Medii aevi Sacra et Profana. Collecta ediderunt Francicscus M i k l o s i c h et I o s e p h u s M ü l l e r (*այսուհետև՝* MM).

[8] I. Κ α ρ α γ ι α ν ν ο π ο υ λ ο ς. Πηγαι τῆς Βυζαντινης 'Ιστοριας, Β' ἐκδοσις. Θεσσαλονικη, 1971, σελ. 65.

[9] *Խնդրի ամենահեղինակավոր ուսումնասիրությունը՝* S p e r o s V r y o n i s. The Decline of Medieval Hellenism in Asia Minor and the Process of Islamization from the Eleventh through the Fifteenth Century. Berkeley – Los Angeles – London, 1971.

*Մեծ Կոմնենոսների կայսրությունը, Հունական թերակղզին, Էգեական ծովի կղզիները և այդ ծովի արևելյան ափերը՝ Զմյուռնիայի, Միլետոսի և այլ շրջանները: Հենց դրանք են արտացոլված այս փաստաթղթերում: Նույնը կարելի է ասել նաև Հոնիական ծովի կղզիների մասին, որոնք էլ Վենետիկի Հանրապետության տիրապետության տակ էին գտնվում:*

*Հիշյալ փաստաթղթերից պարզ է դառնում, որ բյուզանդական կառավարությանը ծառայող ծագումով հայկական ընտանիքներից բացի, կայսրության առանձին շրջաններում բնակություն հաստատած հայերի ենք հանդիպում, այն էլ այնպիսի վայրերում, որոնց մասին չէինք էլ կռահում: Խոսքը վերաբերում է Էգեական ծովի առանձին կղզիների, մանավանդ Պատմոսի, Փոքրասիական ափամերձ շրջանների՝ Զմյուռնիա, Եփեսոս, Միլետոս, Հոնիական ծովի կղզիներից՝ Կեֆալոնիայի, Զակինթոսի, Իթակեի, Հունաստանի մայր ցամաքից՝ Թեսալիայի, Էպիրոսի և այլն: Առավել կամ պակաս չափով հայտնի էր Թրակիայի և Մակեդոնիայի հայությունը:*

*Բյուզանդիայում հաստատված և բյուզանդական ավագանու կազմում ծառայող հայերի առանձին անձնանուններ, վերածվելով ազգանվան-տոհմանվան, հարատևել են բազում դարեր: Հեղինակը այն համոզման չէ, որ այս կամ այն բյուզանդական հայի տոհմանունը, սկզբնավորվելով որպես հայազգի անձի անձնանուն, դարերի ընթացքում պահպանել է կրողի նախապապի էթնիկական բովանդակությունն անփոփոխ: Նրանք, անկասկած, հունացել են, հավանաբար պահպանելով իրենց հեռավոր նախապապերի մասին հուշը: Ավելորդ չէ այստեղ նշել, որ տվյալ փաստաթղթում հիշատակված որևէ հայի անուն, դեռ չի նշանակում որ այդ վայրում գոյություն է ունեցել սոսկ մեկ հայ անձնավորություն: Նա ուներ ընտանիք, ազգականներ և, անկասկած, տեղում պիտի որ գոյություն ունեցած լիներ մեծ կամ փոքր հայկական համայնք: Բազում փաստաթղթերի տակ որպես վկա ստորագրողների թվում առանձին հայերի հիշատակությունը փաստում է տվյալ շրջանում նրանց վայելած վստահությունը, վիճահարույց հարցերի վերաբերյալ ունեցած քաջատեղյակությունը:*

*Ստորև, այբբենական կարգով, հիշատակում ենք ծագումով և ազգությամբ հայ անձանց անուն-ազգանունները: Կարող էինք այդքանով բավարարվել, բայց նպատակահարմար գտանք համառոտակի տալ յուրաքանչյուր փաստաթղթի բովանդակությունը, ներկայացնել միջավայրը և իրավիճակը, որում այն ստեղծվել է: Դա ընթերցողին պատկերացում կտա Բյուզանդական կայսրությունում տվյալ ժամանակաշրջանում տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունների, վանական խոշոր հողատիրության, քաղաքական և եկեղեցական օրենսդրության, ներքին կյանքի բազում կողմերի մասին:*

*Խնդրո առարկա փաստաթղթերի մեծ մասում նշված է կազմման թվականը: Բյուզանդիայում ընդունված էր այսպես կոչված «Աշխարհի արարչագործության» Կոստանդնուպոլսի թվականը՝ 5508 – մ.թ. առաջին տարին: Փակագծերի մեջ տրված է մեր օրացույցին համապատասխանող տարին:*

## 1. ԱՍՊԵՏ – ΑΣΠΙΕΤΗΣ

Անունը ծագում է իրանական «ասպետ» բառից, որ նշանակում է «ձիավոր իշխան»: Ըստ Հր. Աճառյանի «իբրև անձնանուն գործածվել է ԺԲ–ԺԵ դարերում»[10]: Ավելի հին հիշատակվածներից նա նշում է (Ferdinand Justii-ի միջնորդությամբ)[11] Պրոկոպիոս Կեսարացու (VI դ.) աշխատության մեջ հանդիպող պարսիկ զորավար Ասպեբեդեսին[12], և սխալմամբ գրում ʽΑσβάδης (Ասբադես): Նա տեղյակ չէ նույն Պրոկոպիոսի հիշատակած հայազգի Ասպետյաններին ʼΑσπετιανοί. «Ասպետյանների մեծ և բազմամարդ տոհմը[13]»: Հ. Մարկվարտը Ասպետյանների տոհմանունը կապում է թագադիր ասպետության հետ և նրանց նույնացնում Բագրատունիներին[14]:

Արշակունյաց Հայաստանում «թագակապ ասպետության» իշխանությունը հանձնված էր Բագրատունիներին: Փավստոս Բուզանդը ցույց է տալիս, որ «ասպետ» Բագրատունիները «թագաւորքն թագակապն լեալ էին»[15]: Իսկ ըստ Ագաթանգեղոսի՝ «Չորրորդ իշխանն թագակապ իշխանութեան ասպետութեան»[16]: Մովսես Խորենացու համաձայն, Վաղարշակ Արշակունի թագավորը «զկոչեցեալն Բագարատ ... զյառաջասացեալ տանուտիրական պատիւն ազգին պարգևելով, և իշխել նմա թագ ի գլուխ դնել թագաւորին, և կոչել թագադիր, այլ և ասպետ»[17]: Ավելի մանրամասն տե՛ս Ն. Ադոնցի և Հ. Մանանդյանի աշխատություններում[18]:

Բյուզանդական աղբյուրներում Պրոկոպիոս Կեսարացուց հետո Ասպետյանների մասին (Ասպիետես ձևով և որպես տոհմանուն) վկայություններ կան XI դ.[19]: Սակայն Ա. Կաժդանի ասելով, «XI–XII դդ. Ասպետյանները ի՞նչ չափով են կապված VI դ. Ասպետյանների հետ, դժվար է ասել»:

Անթվակիր մի փաստաթուղթ, գրված XIV դ. վերջում Կոստանդնուպոլսի պատրիարք Մատթեոս Ա-ի (1397-1410) կողմից, վերաբերում է Կոստանդնուպոլսի սուրբ Գերոնտիոսին նվիրված տաճարին պատկանող տարածքում գտնվող ջրավազանի շուրջ գնացած վեճին: Ջրավազանը նախորդ պատրիարք Անտոնիոս Դ-ի (1389-1390) կարգադրությամբ մասամբ տրվել էր Ալեքսիոս Անգելոսին՝ տաճարին վարձ վճարելու պայմանով: Հիշյալ Ալեքսիոսը ոչ վարձն էր վճարում տաճարին, ոչ էլ վերադարձնում ստացածը: Տաճարը մետրոպոլիտի թույլտվությամբ կառուցվել էր Անդրեաս Ասպիետեսի և նրա մոր կողմից հիմնադիրների հոգևոր կարիքների բավարարման համար: Բողոքով դիմում են պատրիարքին, պահանջելով, որ կա՛մ ջրավազանի մասը վերադարձնեն իրենց, կա՛մ այն ստացողը վարձը վճարի[20]:

---

[10] Հ. Աճառյան. Հայոց անձնանունների բառարան. հ. Ա, Երևան, 1942:

[11] F. J u s t i. Iranisches Namenbuch. Marburg, 1895.

[12] ʼΑσπεβέδου του Πέρσου. Procopii Caesariensis Opera Omnia. Rec. J. H a u r y. Vol. I De Bellis libri I-IV. De Bello Persico, I 9, 24 (p.45).

[13] Τὸ τῶν ʼΑσπετιανῶν καλούμενον γένος, μέγα τε ὂν καὶ πολυάνθρωπον. Նույն տեղում, II 34 12-18 (Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 5: Բյուզանդական աղբյուրներ. գ. Ա, Պրոկոպիոս Կեսարացի. Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 81):

[14] J. M a r k w a r t. Südarmenien und die Tigrisquellen. Wien, 1930.

[15] Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց. Ս. Պետերբուրգ, 1883, էջ 216:

[16] Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, աշխատ. Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Կանայեանց. Տփղիս, 1909, էջ 414:

[17] Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, աշխատ. Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան. Տփխիս, 1913, էջ 110:

[18] Н. А д о н ц. Армения в эпоху Юстиниана. СПб., 1908 с. 61-63. Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն. Ֆեոդալիզմը Հին Հայաստանում. Երևան, 1934, էջ 61-63:

[19] Ա. Պ. Կաժդանը XI–XII դդ. հիշում է 9 հոգու (К а ж д а н. Армяне, с. 43–46): Ասպետյանների մասին տե՛ս նաև՝ J. L a u r e n t. Arméniens de Cilicie: Aspietès, Oschin, Ursinus.– "Melanges G. Schlumberger". T. I, Paris, 1924, p. 165.

[20] MM, t. II, p. 301-303.

6908 (1400) Թվակիր փաստաթուղթը վերաբերում է կայսեր (Մանուիլ II Պալեոլոգոս, 1391-1425) մորաքույր Աննա Ասասինա Պալեոլոգինայի վեճին ընդդեմ «ի սուրբ Հոգի մեր նվաստության (պատրիարք Մատթեոս Ա-ի) սիրելի որդու, տեր Գեորգիոս Գուդելեսի Կոստանդնուպոլսում գտնվող և յոթ տարի առաջ վաճառված այգու շուրջ»: Վեճին խառնվում է «ամենապատիվ մայրապետ Ֆերոնիկե Ասպիեախիսան (Φερονικη 'Ασπιέτισσα) որը մեծ սակելլարիոսին ապացուցում էր, որ խնդրո առարկա այգին իրեն է պատկանում[21]: «Ասպիետիսա»-ն Ասպիետեսի իգականն է:

Մոտ 1400 թ., նույն պատրիարք Մատթեոս Ա-ի օրոք դրված անթվակիր գրությունը վերաբերում է Թեոդորա Ասպիետիսայի (Θεοδώρα η 'Ασπιέτισσα) և նրա եղբայր Սիմոն Ասորու (Σἱμων ο Συρος) դիմումին Կոստանդնուպոլսի պատրիարքին, որում ցույց է տրված, որ իրենք ոմն քահանա Նիկողայոս Ռադենոսին տարածք են հատկացրել սուրբ Դիմիտրիոսին նվիրված տաճար կառուցելու համար: Տաճարը կառուցվում է, Թեոդորա Ասպիետիսան վախճանվում, տաճարը ժառանգելով իր հոգևոր դստեր Աննա Ասպիետիսային (Ἄννα ἡ 'Ασπιετισσα): Վերջինս իր մորեղբորորդի, Սիմոն Ասորու որդի տեր Մանուիլ Տարոնացուց (Μανουηλ τὸν Ταρωνείτην) պահանջեց իրեն զիջել տաճարի հարավային կողմում գտնվող տարածքը: Փաստաթուղթը վերաբերում է դրա շուրջ գնացած վեճին, որում մասնակցություն է ունենում նաև Աննա Ասպիետիսայի հոգևոր դստեր ամուսին Պանդոլեոնը (Παντολέων)[22]:

## 2. ԱՐՄԵՆՈՊՈՒԼՈՍ - ΑΡΜΕΝΟΠΟΥΛΟΣ

Բառացի նշանակում է «Հայի ձագ», այսինքն՝ «Հայորդի»: Ա. Կաժդանը նրանց ընդգրկել է իր աշխատության Գ գլխում «Ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներ»: Նա, թեև դրում է, թե «բնական պիտի թվար Արմենոպուլոսներին դիտել որպես հայկական ծագմամբ ընտանիքներ. նման տիպի տոհմանուններ (Ֆրանկոպուլոս, Սարակինոպուլոս, Սիրոպուլոս և նմաններ) լայնորեն տարածված էին Բյուզանդիայում, և նշանակում էին որոշակի «ֆրանկական», արաբական, ասորական ծագմամբ անձնավորություններ»: Այդ ասելուց հետո նա ավելացնում է. «Սակայն մեզ ծանոթ ոչ բոլոր Արմենոպուլոսները կարող են անառարկելիորեն վերաբերել հայերին»[23]: Նա չի պատճառաբանում, թե ինչու: Թվում է նա լռելյայն նկատի ունի XIV դ. նշանավոր օրենսգետ Կոստանդին Արմենոպուլոսի վերաբերյալ հատկապես հույն բյուզանդագետների առաջ քաշած վարկածը[24]: Կոստանդին Արմենոպուլոսը (1320-1383 թթ.) Թեսաղոնիկեցի նշանավոր օրենսգետ էր և քաղաքի գերագույն դատավորը: Նա կազմել էր «Հեքսաբիբլոս» կոչված, ինչպես անվանումն է ցույց տալիս, վեց գրքից բաղկացած քաղաքացիական օրենսգիրքը, որ գործեց Բյուզանդական կայսրության գոյության վերջին դարում և ամբողջ օսմանյան տիրապետության ժամանակ: Այն Հունաստանում գործածության մեջ էր մինչև 1940 թ., երբ, ի վերջո, հաստատվեց Հունաստանի քաղաքացիական նոր օրենսգիրքը: Չցանկանալով օրենսգետի տոհմանվան մեջ «հայ» էթնիկոնը տեսնել, նրանք Ἀρμενόπουλος-ի առաջին տառի առջևի spiritus lenis-ը փոխարինելով spiritus asper -ով, կարդացին Harmenopoulos, բառը կապելով հուներեն ἄρμενα բառի հետ, որ «նավի առագաստ» է նշանակում կամ «առագաստանավ»: Թե ինչպե՞ս է հարմարվում բառի երկրորդ բաղադրիչի՝ -πουλος որդի, զավակ, ձագ բառի հետ, բացատրություն տվող չկա: Հիշենք այստեղ նաև մեր պատմությունից մի դեպք: Բուլղա-

---

[21] MM, t. II, p. 363.
[22] MM, t. II, p. 404-405
[23] К а ж д а н. Армяне, с. 99-100.
[24] N. B є η ς. 'Αρμενοπούλικα ἀναλεκτα.– In: Τόμος Κ. 'Αρμενοπουλου. 'Επιστημονικὴ 'Επετηρὶς Πανεπιστημιου Θεσσαλονικης, 6, 1952, σελ. 352. Տե՛ս նաև՝ Specimen eines prosopographischen Lexikons der Palaeologenzeit.– "Jahrbuch der osterreichischen Byzantinistik, Bd. 22, 1973, 219 A.1.

րիայի նշանավոր ցար Սամուիլը հայազգի էր և որդին կոմսի: Մոր անունը Հռիփսիմե էր: Բյուզանդական աղբյուրներում նա կոչված է «Կոմիտոպուլոս» (κομητόπουλος)[25], իսկ հայկական աղբյուրներում «Կոմսաձագ»: «Զի էին նոքա (Սամուիլն ու իր եղբայրը - Հ. Բ.) երկու եղբարք, որք Կոմսաձադքն կոչէին, անուն երիցուն Սամուէլ, յազգէս Հայոց, ի գաւառէն Դերջանայ»[26]:

Ըստ Վ. Լորանի և Ա. Կաժդանի Արմենոպուլոսը որպես տոհմանուն հայտնի է XI դ. սկզբից[27]:

Ավստրիացի բյուզանդագետ Էրիխ Տրապը նոր փաստերով միանգամայն ճիշտ տոհմանունը կապեց «հայ» էթնիկոնի հետ[28]:

Անցնում ենք մեր փաստաթղթերին: 6697 (1188) թ. դեկտեմբերի փաստաթուղթը վերաբերում է Էգեական ծովի Պատմոս կղզու Հովհաննես Աստվածաբանի վանքի սեփականությունը հանդիսացող նավերին: Դրանք կայսերական խրիսովուլներով հաստատված իրավունքով կարող էին նավարկել Բյուզանդական կայսրության արևմտյան և արևելյան ծովերով, կղզիներով, իսկ Կոստանդնուպոլսում խարիսխ գցել տարին մեկ անգամ: Դրանք ազատված էին ամեն տեսակի հարկերից ու մաքսերից: Վանքի սեփականությունը գարձած մի նավի չափը, բեռնատարողությունը որոշելու համար վանքը դիմեց Ծովային սեկրետին ու խնդրեց ստանալ որոշումը: Կոստանդնուպոլսի Նեորիոնի ափը, որտեղ որ նավը խարիսխ էր գցել, ժամանեց սեկրետի ստուգող հանձնախումբը: Հանվանե հիշված են հինգ հոգի: Երկրորդը Վասիլ Արմենոպուլոսն էր (Βασιλειου του 'Αρμενοπουλου): Ստուգողներից մեկը Հովհաննես Կամատերոսը վարում էր սկրոտոմանդատորիկոնի պաշտոնը «մեր հզոր և սուրբ կայսեր մորեղբոր, դրոմոսի լոգոթետ պանսեբաստ տեր Կոստանդին Թոռնիկի (Κωνσταντίνου τοῦ Τορνικη) (նրանց մասին տե՛ս ստորև Թոռնիկների տակ, № 7) տված իրավասությամբ»[29]:

6758 (1250) թ. փետրվարին կազմված փաստաթուղթը վերաբերում է Մանուիլ Պալեոլոգոսի, իր կնոջ և որդու կողմից Միլետոս քաղաքի շրջանում գտնվող իրենց տասնհինգ մոդ տարածությամբ ծնողական կալվածքի վաճառքին Աստվածածնի վանքին՝ մեկ բանող եզան, երեք ոսկեդրամի և մեկ խոզի դիմաց: Վաճառողները հատուկ նշում են, որ դնողը առհավետ և անբաժանելի իրավունք ունի այն վաճառել, նվիրաբերել, փոխանակել, անուշադրության մատնել կամ բարելավել, վարվել այնպես, ինչպես թույլատրում են սրբազան օրենքները սեփականատերերին՝ վարվել ըստ իրենց ցանկության: Վկաներից փաստաթուղթը ստորագրել են նաև Միլետոսի սրբազնագույն մետրոպոլիտության ավագ քահանա Կոստանդին Գավրասը (տես ստորև՝ Գավրասների տակ, N 6) Միլետոսի սրբազնագույն մետրոպոլիտության քահանա և վիճակավոր Գևորգ Արմենոպուլոսը և Կոստանդին Արմենոպուլոսը (վերջինս առանց պաշտոնի հիշատակության)[30]:

## 3. ԱՐՇԱԿ - Α Ρ Σ Α Κ Η Σ (ΑΡΣΑΚΙΟΣ)

Հիշյալ անունը ինձ հանդիպեց մեկ անդամ Հոնիական ծովի կղզիներ Կեֆալոնիայի, Զակինթոսի և Իթակեի կոմս Ռիկարդո Օրսինիի Կեֆալոնիայի եպիսկոպոսությանը ընթա-

---

[25] Ioannis Scylitzae Synopsis historiarum. Rec. Ioannes Thurn. Berolini et Novi Eboraci, 1973, p. 328 (*Օտար աղբյուրները ... 10. գ. Գ, Հովհաննես Սկիլիցես, 1979, էջ 66-67*):

[26] *Ստեփանոսի Տարոնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական, Ի Ս. Պետերբուրգ, 1885, էջ 244*:

[27] V. L a u r e n t. Les Bulles métriques dans la Sigillographie Byzantine. Athènes, 1932, N152. К а ж д а н. Армяне, с. 99.

[28] E r i c h  T r a p p. Zur Etymologie des Namens Armenopoulos.– "Jahrbuch der osterreichischen Byzantinistik", Bd. 25. Wien, 1976.

[29] MM, t. VI, p. 122-124.

[30] MM, t.VI, p. 191-193.

կա կալվածքների ցուցակում, կազմված 1262 թ.։ Օրսինիները Հռոմի նշանավոր ընտանիք էր, որ եկեղեցական և քաղաքական բազում անվանի գործիչներ տվեց։ XIII դ. այդ ընտանիքի անդամները շատ հզոր էին Իտալիայում։ Հոնիական կղզիներ Կեֆալոնիան ու Զակինթոսը 1187 թ. անցան նրանց իրավասության տակ։ 1236 թ. ենթարկվեց Աքայայի իտալացի իշխան Գոդֆրուա II Վիլարդուինին։ Ռիկարդո Օրսինիի 1262 թ., Հենրիկոս եպիսկոպոսի օրոք կազմած Կեֆալոնիա եպիսկոպոսության կալվածքների մանրամասն Տիպիկոնը ցուցակը պահպանվել է և դրան սույն հոդվածում անդրադառնալու ենք բազմիցս։

«Այգիներ» ենթավերնագրի տակ ասված է, որ Սուրբ Եզրասի վանքին էր պատկանում մի այգի «որ գնել էին Արշակից» (ἐξ ἀγορας απο του 'Αρσακιου)[31]։ Կ.Կոստանդոպուլոսի հրատարակած XIII դ. մի արճճե կնիքի վրա կա Ս. Դիմիտրիոսի (կամ Ս. Գևորգի) պատկերը և նշված է տիրոջ անունը, որ հրատարակիչն ընթերցում է «Գևորգ Արշակ» ( Γεώργιος 'Αρσάκιος)[32]։

## 4. ԱՐՇԱՎԻՐ - Α Ρ Σ Α Β Η Ρ

Կոմս Ռիկարդո Օրսինիի կազմած Կեֆալոնիայի եպիսկոպոսության ցուցակում Էպիրոսի Ավլոնի թեմում հիշվում է մի կալվածք, որ Ավլոնի վանքն է գնել ոմն Նիկեփոր Արշավիրից (ἐξ ἀγορας Νικηφόρου του 'Αρσαβῆρι)[33]։ Հազվադեպ հանդիպող այս անվանը հանդիպում ենք XI դ. մի արճճե կնիքի վրա, որի վրա Վ. Լորանը կարդում է 'Αρσαβἰνος - Արսավինոս[34] (ուղղելի Արսավի՞րոս - Արշավի՞ր)։

Ավլոնը գտնվում էր Էպիրոսի իշխանության կազմում և դեռ 1258 թ. գրավել էր Սիկիլիայի թագավոր Մանֆրեդը[35] (1254-1266)։ Սրա վասալն էր վերոհիշյալ Ռիկարդո Օրսինին։

## 5. ԱՐՏԱՎԱԶԴ - Α Ρ Τ Α Β Α Σ Δ Ο Σ

Արտավազդը որպես հատուկ անուն (ոչ ազգանուն-տոհմանուն) Բյուզանդիայում տարածված էր VIII–X դդ., իսկ որպես տոհմանուն հանդիպում է XI դ. վերջից։ Ա. Կաժդանը, թեև VIII դ. Արտավազդներին համարում է «Անտարակույս հայ», XI–XII դդ. Արտավազդների մասին գրում է, թե նրանց էթնիկ պատկանելության մասին ուղղակի տվյալներ չկան։ Այդ իսկ պատճառով սրանց էլ տեղադրում է իր գրքի Գ գլխում «Ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներ»[36]։ Նա հիշատակում է այդ տոհմանունը կրող 14 հոգու։

Մեր փաստաթղթերում Արտավազդը հանդես է գալիս որպես հատուկ անուն։ Ալեքսիոս I Կոմնենոս կայսեր (1081-1118) 6607 (1099) թվակիր փաստաթուղթը Էգեական ծովի Պատմոս կղզու մոտ գտնվող Լիպսո կղզուն և Պարթենիոս ու Տեմենիոն պրոաստիոնների շուրջ գնացած վեճի լուծմանն է վերաբերում։ Նրանում ասված է, որ կայսրը ցանկանում է որպես հոգու պարտք (ψυχικὸν) այդ երեքից յուրաքանչյուրին նվիրել, որպես պրոսկաթիմենոս, չորսական պարիկոս, որոնք ազատ են և հարկատու չեն, պայմանով, որ չունենան սեփական հող, արձանագրված չլինեն պետական կադաստրում։ Դրանք ազատ են ամեն տեսակի պարհակներից, անգարիոնից, պետական հարկերից ու պարտավորություններից։ Փաստա-

---

[31] MM, t. V, p. 41.

[32] K. K ω ν σ τ α ν τ ό π ο υ λ ο ς. Βυζαντιακὰ μολυβδόβουλλα. Συλλογὴ Α. Κ. Σταμούλη, 'Αθῆναι 1930, ἀριθ. 113. Ա. Կաժդանի դատողությունները՝ К а ж д а н. Армяне, с. 134 – 135.

[33] MM, t. V, p. 31. Շեշտը եթե դնենք անվան վերջին տառի՝ ἰ-ի վրա (ի), կստանանք դրա հայերեն սեռականը՝ Արշավիրի։

[34] V. L a u r e n t. La Collection C.Orghidan, N 416.

[35] История Византии, т. III, М. 1967, с. 67.

[36] К а ж д а н. Армяне, с. 111 и сл.

*թուղթը գրանցվեց տարբեր սեկրետներում: Օգոստոսի 27-ին այն գրանցվեց Արտավազդի կողմից (*κατεστρωθη δια τού 'Αρταβασδου*)*[37]*:*

*6742 (1234) թ. մարտ և մայիս ամիսներին կայսր Հովհաննես III Դուկաս Վատացիսը*[38]*(1222-1254) Զմյուռնիայի շրջանի Լեմվոնի Ս. Աստվածածնի վանքին է նվիրաբերում վեց լուծ հող (*γῆν ἕξ ζευγαριων*)*[39] *«ձեռամբ իր քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս Կուրտիկեսի»*[40]*: Լեմվոն վանքը (*Λεμβων μονή*) Փոքր Ասիայում, Զմյուռնիայից ոչ հեռու, նրա արևելյան կողմում գտնվող համանուն լեռան վրա կառուցված վանք էր, նվիրված Ս. Աստվածածնին: Հիմնադրվել էր (կամ վերստին կառուցվել) Նիկիայի կայսր Հովհաննես Վատացիսի կողմից, ավելի հին վանքի հիմքերի վրա: Ենթադրվում է, որ 7-րդ Տիեզերական ժողովի (787 թ.) արձանագրություններում հիշվող Լեմվու վանքը հենց այն է, որի ավերակների վրա կառուցվեց Լեմվոնը: 1247 թ. Հովհաննես Կանտակուզինոսը, Թրակեսիոն բանակաթեմի դուքսը, որին ենթարկվում էր վանքը, այն ազատեց ամեն տեսակի հարկատվությունից: Զմյուռնիայի շրջանի վերաբերյալ մեծ արժեք է ներկայացնում XIII դարի «Քյոթուկը», որը պահպանվել և հրատարակվել է մեր վեցհատորյակի 4-րդ հատորում, որին և անդրադառնալու ենք բազմիցս:*

*Դուքս Կուրտիկեսը հիշված է փաստաթղթի շարունակության մեջ, ինչպես և 1229 թ. և նույն՝ 1234 թ. կազմված այլ փաստաթղթերի: Այնտեղ դրված է. «Կայսեր ամենացանկալի քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս տեր Հովհաննես Դուկաս Կուրտիկես»*[41]*: Տեղորոշելով տեղանքի սահմանները, հիշվում են «Արտավազդի կալվածքները» (*τα χωραφια του 'Αρταβασδου*)*[42]*:*

*Հաջորդ՝ 6743 (1235) թ. մարտի փաստաթղթում տեղորոշվում են Լեմվոնի Ս. Աստվածածնի վանքի կալվածքների սահմանները և մեկ անգամ ևս հիշվում «Արտավազդի կալվածքները»: Վերջինս այստեղ կոչված է «Զմյուռնացի Արտավազդ» (*τοῦ απο Σμυρνης Αρταβάσδη*)*[43]*: Փաստաթուղթը կազմել է «Թրակեսիոն և Փիլադելփիայի (այժմ՝ Ալաշեհիր Թուրքիայում – Հ. Բ.) բանակաթեմի ստրատոպեդարխ Միքայել Փոկասը»:*

*6772 (1262) թ. հուլիսի 12-ին Կեֆալոնիա, Զակինթոս և Իթակե կղզիների կոմս Ռիկարդո Օրսինիի կազմած Կեֆալոնիայի եպիսկոպոսության ենթակա կալվածքների ցուցակում բազում վանքերի կալվածքների շարքում հիշվում են և Էպիրոսի Ավլոնի շրջանի կալվածքները, այդ թվում և «տեր Արտավազդ Մանդակի արմակիոնը»*[44]*: Նույն շրջանում հիշվում է*

---

[37] MM, t. VI, p. 95. *Փաստաթղթի գիտական-քննական հրատարակությունը՝* Βυζαντινὰ ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου. Α΄ Αυτοκρατορικα. 'Υπο Ἔρας Βρανουση. 'Αθῆναι 1980, σελ. 180. *Հեղինակը չի բացառում, որ փաստաթուղթը կարող է կազմված լինել հաջորդ ինդիկտիոնում 1114 թ.:*

[38] *«Վատացիս» ազգանվան վերջածանցը հայերեն -ացի- ն է, այսինքն՝ Վատոս վայրից սերող: Հանդիպում է և հունարեն ածանցով՝* Βατηνος. *Տե՛ս* Р. М. Б а р т и к я н. О Βαρδας ο Βρατζῆς Жития св. Марии Новой и византийских патронимах Иверици и Ватаци.– "Историко-филологический журнал" (далее – ИФЖ), 1980, № 3, с. 244-250 (*վերատպությունը ն ո ւ յ ն ի՝ Հայ-բյուզանդական հետազոտություններ. հ. Բ, Երևան, 2002, էջ 277-283*):

[39] *Հատուկ նշված է, «որպեսզի այն սեփական լծկաններով մշակեն՝ տեղում բնակվող վանականներին պարեն արտադրելու համար, ապա և որպես արոտներ»:*

[40] MM, t. IV, p. 146.

[41] MM, t. IV, p.239-240, 243.

[42] MM, t. IV, p. 148..

[43] MM, t. IV, p. 10-11. *Սրա մասին տե՛ս* H. A h r w e i l e r. L' Histoire et la geographie de la région de Smyrne entre des deux occupations turques (1081-1317). Travaux et Memoires 1, 1965, p.168.

[44] MM, t. V, p. 19. 'Αρμάκιον *բառը բառարաններում չի հանդիպում: V գ. բառարանագիր Հեսիքիոսն ունի* ἀρμακιας *(հոգնակի հայցական) և բացատրում՝* στοας, *որ նշանակում է ծածկած սյունասրահ:*

և «Արտավազդ Մանդակի կալվածը» (Մանդակների մասին տե՛ս ստորև, N 15) (χωράφιον του κύρ᾽Αρταβάσδου τοῦ Μανδακίου)[45]:

Նույն կալվածագրում «Ս. Լևոնի վանքի» այգիների թվում հիշվում է հինգ մոդ տարածությամբ այգի, «որ վանքն ստացել է Արտավազդ Մանդակից» (απο κυριου᾽Αρταβάσδου του Μανδακιου)[46]: Ս. Անարծաթից վանքի կալվածքներին մոտիկ գտնվում էր «տեր Արտավազդի կալվածքին մոտիկ գտնվող երկու մոդ տարածությամբ կալվածք» (πλησίον χωραφίου τοῦ κυρίου᾽Αρταβασδου)[47]:

## 6. ԳԱՎՐԱՍ-Γ Α Υ Ρ Α Σ (ΓΑΒΡΑΣ)

Հունարենում տոհմանունը տվյալ շրջանում արտասանվում էր ոչ թե Գավրաս, այլ Ղավրաս: Ա.Կաժդանը սրանց էլ ընդգրկել է իր գրքի Գ գլխում՝ «Ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներ»: Ուսումնասիրողները բաժանվել են երկու մասի, նրանք, ովքեր ընտանիքը հայկական են համարում, և նրանք, ովքեր մերժում են դա: Ա. Կաժդանը այն համարում է «արևելյան ծագումով ընտանիք»[48], պարզ չէ «արևելյան» ասելով նա ինչ է հասկանում: Օտար հեղինակներին հայտնի չէր, որ 1232 թ. գրված հայկական Ավետարանում (Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. N 1519) հիշված է պատվիրատուն՝ «պատրոն Խաւռաս», «իշխանաց իշխան պատրոն Խաւռաս», որ Հաղբատի վանքի ժամատանը թաղված են այդ ընտանիքին պատկանող անձինք հայերեն «Խաւռաս» տապանագրերով: Հարցը մանրամասն ուսումնասիրված է տողերիս հեղինակի կողմից[49]:

Միկլոշից-Մյուլլերի վեցհատորյակում այդ տոհմանունը կրող անձի ամենավաղ հիշատակությունը վերաբերում է Փոքր Ասիայի ամենաարևմտյան շրջանում՝ Էգեական ծովի ափին գտնվող Միլետոս քաղաքի քահանայի առնչությամբ: Փաստաթուղթը ութ մոդ տարածությամբ կալվածքի վաճառքին է վերաբերում, կազմված 6721 (1213) թ. մարտին: Վաճառողը՝ ոմն Միքայել Կուներիս, նրա կին Աննան և որդիներ Վասիլն ու Կոստանդինը, գնողը՝ «փառավորագույն պրոտովեստիարիոս» Գեորգիոս Եվնուխոսն է: Վաճառքի վկաները չորս հոգի են, չորսն էլ Միլետոսի մետրոպոլիտության քահանաներ: Երկրորդը հիշված է այսպես. «Ես, Կոստանդին Գավրաս՝ Միլետոսի սրբազնագույն մետրոպոլիտության քահանա և ժառանգավոր, նույնպես վկայում_եմ և ստորագրում»[50]:

1216 թ. գրված մի փաստաթուղթ վերաբերում է Միլետոսի մոտ գտնվող Լատրոս լեռան վրա հաստատված բազում վանքերից Ս. Պավլոսի վանքի մի պրոաստիոնի շուրջ գնացած վեճին: Վերջինինս հարցը քննարկելու համար ուղարկված է եղել «պանսևաստ սևաստ տեր Իոաննակիոս Գավրասը»[51]:

6745 (1236) թ. սեպտեմբեր ամսին կազմված փաստաթղթում խոսքը քահանա Հովհաննես Պոլիտեսի (Պոլսեցու) և նրա հորեղբոր (կամ մորեղբոր) որդի Հովհաննես Գավրասի կողմից Պատմոս կղզու Քիոնիզմենի Աստվածածնի («Ձյունածածկ Աստվածածնի») վանքի վանահայր տեր Գաբրիելին և վանականներին տրվելիք 16 մոդ տարածությամբ կալվածքների մասին է: Դրանցից չորսը նվիրում են վանքին, իսկ մնացած տասներկու մոդը եր-

---

[45] MM t. V, p. 21, 22, 30, 31.

[46] MM t. V, p. 42.

[47] MM, t. V, p. 62.

[48] К а ж д а н. Армяне, с. 88.

[49] Р. М. Б а р т и к я н. О византийской аристократической семье Гаврас (Γαυρας - Γαβρας).– ИФЖ, 1987, № 3, № 4; 1988, № 1. Հոդվածաշարքը առանձին գրքով մեր հունարեն թարգմանությամբ լույս է տեսել Աթենքում. Χ ρ α τ ς Μ. Μ π α ρ τ ι κ ι ά ν.᾽Η βυζαντινὴ αριστοκρατικὴ οἰκογένεια τῶν Γαυράδων (Γαβράδων). Ἱστοοικη, προσωπογραφικη καὶ γενεαλογικη μονογραφία. Αθήνα, 1993.

[50] MM, t. VI, p. 162-164.

[51] MM, t. IV, p. 291. Նաև՝ К а ж д а н. Армяне, с. 92.

կու ոսկեդրամի դիմաց վաճառում հիշյալ վանքին: Փաստաթուղթը ստորագրել է Հիերու (Ιεροῦ) եպիսկոպոսության նոմիկոս ու ժառանգավոր Կոստանդին Կարանտենոսը[52]:

6758 (1250) թ. փետրվարի փաստաթուղթը վերաբերում է Մանուիլ Պալեոլոգոսի կողմից Էգեական ծովի Պատմոս կղզու Քիոնիզմենի Աստվածածնի վանքի վանահայր տեր Նիկոդիմոսին և վանքի համայն եղբայրության շուրջ 15 մոդ տարածությամբ կալվածքի վաճառքին՝ մեկ բանող եզան, երեք ոսկեդրամի և մեկ խոզի դիմաց: Փաստաթուղթը ստորագրել է յոթ հոգի: Առաջինը՝ Կոստանդին Գավրաս, Միլետոսի սրբազնագույն մետրոպոլիտության ավագ քահանա: Երրորդը՝ Գեորգիոս Արմենոպուլոս, Միլետոսի սրբազնագույն մետրոպոլիտության ավագ քահանա: Չորրորդը՝ Կոստանդին Արմենոպուլոս (այլ տվյալներ բացակայում են)[53]:

Ռիկարդո Օրսինիի 6772 (1262) թ. Հոնիական կղզիներից Կեֆալոնիայի եպիսկոպոսության կալվածքների ցանկում Ս. Աստվածածնի վանքի կալվածքների թվում հիշվում է Գեորգիոս Գավրասինը՝ հինգ մոդ տարածությամբ[54]:

Հաջորդ Գավրասները վերաբերում են ավելի ուշ ժամանակաշրջանին: Իրենց «անօրեն» վարքի համար Կոստանդնուպոլսի պատրիարքից երրորդ և չորրորդ նկատողություն ստացած և մեղայական ստորագրած մի քանի հարյուր հոգևորականների թվում հիշվում են Թեոդորոս Գավրասը և Միքայել Գավրասը: Փաստաթուղթը կրում է 6866 (1357) թ.: «Անօրեն» վարքի տակ հիշվում է անչափահասների ամուսնության խորհուրդը կատարելը[55]: Ստորագրողների 90 տոկոսը իրենց անուն-ազգանունը ճիշտ գրել չգիտեն: Վկտում են տառասխալները, որ վկայում է ստորին հոգևորականության կիսագրագիտության մասին:

6869 (1360) թ. նոյեմբեր ամսին կազմված փաստաթուղթը Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիայի հոգևոր ատյանում ժառանգության շուրջ գնացած վեճի քննությանն է վերաբերում: Վկաների թվում հիշվում է Կոստանդնուպոլսի հանրահայտ ու նշանավոր «կայսերական ու պատրիարքական արգո Մանգանոն վանքի վանական Գավրասը»[56] (անունը փաստաթղթում անընթեռնելի է):

6908 (1399) թ. դեկտեմբերի փաստաթուղթը վերաբերում է Մարիա Հագիոպետրիտիսա Գավրենայի (Γαβραινα, Գավրասի իգականը) դիմումին Կոստանդնուպոլսի պատրիարքաբանի հոգևոր խորհրդին: Դիմողը հայտնեց, որ իր ամուսին Հովհաննես Գավրասը գերեվարվել էր, զանազան պարտքերի մեջ ընկել, ապա և իր՝ Գավրենայի օժիտն ամբողջությամբ ծախսվել էր: Պարտատերերը իր ամուսնուց բռնի պահանջում են ստանալ ինչ որ մնացել է: Գավրենան խնդրում է եկեղեցու օգնությունը[57]:

6908 (1400) թվակիր փաստաթղթում ասվում է, որ Կոստանդնուպոլսից դուրս, կայսերական ծովափի դարպասի մոտ գտնվող Հովհաննես Մկրտչի տաճարը տիրելու և ժառանգելու իրավունք ունի երեց Նիկոլայոս Խրիսիմոսը, որպես ի հիմանց այն կառուցած: Երեց Նիկոլայոսը տաճարը ժառանգում է իր երկու որդիներին, որոնք հոգևորական դառնալով, տիրում էին տաճարին և իրար մեջ բաժանում եկամուտները: Նրանցից մեկը կոչվում էր Գեորգիոս Մոսխոպուլոս, մյուսը՝ Գավրաս: Մոսխոպուլոսն ունեցավ երկու զավակ՝ Աննա Տորնարեային և Միքայել Մոսխոպուլոսին, որոնց հավասար բաժնով թողեց տաճարի վրա ունեցած իր իրավունքները: Քանի որ զավակներից մեկը՝ Աննան իգական սեռին է պատկանում, նա իր մայր Գավրենայի հետ տաճարի իր բաժինը՝ երկու չորրորդը վաճառում է հիշյալ Միքայել Մոսխոպուլոսին: Վերջինս տիրում է տաճարի երեք չորրորդին, երկու

---

[52] MM, t. VI, p. 187-188.
[53] MM, t. VI, p. 191-192.
[54] MM, t. V, p. 56.
[55] MM, t. I, p.370-371.
[56] MM, t. I, p.395.
[57] MM, t. II, p. 299-300.

չորրորդը՝ գնմամբ, մեկը՝ ժառանդաբար: Հետագայում հանդես է գալիս մի այլ պահանջատեր, սկսվում է վեճ, որին և վերաբերում է սույն փաստաթուղթը[58]:

Հոգևոր խորհրդի 6908 (1400) թ. հոկտեմբերի թվակիր փաստաթղթում գրված է, որ սինոդին ներկայացավ Իրինի Գավրենան և հանդես եկավ իր կեսրայր Միքայել Մոնեմվասիոտիսի դեմ: Նա ասաց, որ յոթ տարի առաջ իր ամուսինը (Մոնեմվասիոտիսի որդին) վախճանվելիս կտակով իր հարազատ հորը նշանակեց հոգաբարձու, որպեսզի նա հավասարապես իր օժիտը բաժանի Գավրենայի և վերջինիս զավակների միջև, և ինչ նա պարտական էր իր որդուն՝ վերջինիս մոր օժիտը, իր ասելով՝ հազար ոսկեդրամ: Ներկա գտնվող Գավրենայի կեսրայրն ասաց, որ որդու ունեցվածքից իր ձեռքը ոչինչ չի հասել, քանզի ամեն ինչի տերն ու տիրականը իր հարսն էր: Ինչպե՞ս է նա իրենից օժիտը պահանջում, երբ ոչինչ չի ստացել: Բավականին երկարած վեճը լուծվում է Հոգևոր խորհրդում[59]:

6909 (1401) թ. մայիսին Կոստանդնուպոլսի Տիեզերական պատրիարքի նախագահությամբ գումարված ժողովում, որին մասնակցում էին նաև Կյուզիկոսի, Գանգրայի, Սևերինի և Մեդիայի արքեպիսկոպոսներ, եպիսկոպոսներ և այլք, բերման ենթարկվեց քահանա Գավրասը: Նրան մեղադրանք ներկայացրեցին, թե անգիտությամբ պրոտոստրատորի չորրորդ ամուսնության խորհուրդն է կատարել: Նա պատրիարքի կողմից իր պարտականությունները կատարելու իրավունքից զրկվեց և պահանջվեց նրա հարցը քննության ենթարկել: Ոմն Ցակրաս Կանտակուզենոս խոստովանեց, որ ինքը հարբեցրել էր քահանային, ապա նրան մի թուղթ ցույց տվել, իբրև թե դա ամուսնության խորհուրդը կատարելու իր ստացած բուլլան (թույլտվությունն) է: Ժողովը Գավրասին արդարացրեց, բայց արգելեց իր տան մեջ մի տարի գինի խմել: Եթե նրան կանչեն գործով (ինքը չինարար է), նա պարտավոր է օրական ընդամենը մեկ գավաթ գինի խմել: Այն պատճառով, որ ժողովում քվորում չկար, բացակայում էին երկու անդամ, որոշման կայացումը թողնվեց հետագային, երբ անհրաժեշտ քվորումը ապահովվի[60]:

Վերջապես նույն 6909 (1401) թ. հուլիսի փաստաթղթում ասվում է, որ Կոստանդնուպոլսի Տիեզերական պատրիարքին և հոգևոր խորհրդին է դիմել Վատացինա Գավրենան: Նա հանդես եկավ ընդդեմ կայսեր հարազատ Դիմիտրիոս Վուլոտիսի դեմ ու հայտարարեց, որ Կուվուկլարիա կոչվող Աստվածածնի սրբապատկերը, որն իրենց ընտանիքին է պատկանում և կտակով տրվել էր իր դստեր՝ Աննա Վատացինային իր մորից (Վատացինա Գավրենայից) , այն է՝ իր դստեր տատ Կալի Գավրենայից, իսկ վերջինս իր հերթին կտակով ստացել էր իրենց հարազատ քույր մայրապետ Աթանասիա Գավրենայից, Վուլոտիսն իր մոտ է պահում և չի տալիս: Իրենք այդ սրբապատկերից եկամուտ կունենան, քանզի այն մեծ համբավ է վայելում, երկրպագության առարկա է: Վուլոտիսը ներկայացրեց Աթանասիա Գավրենայի կտակը, համաձայն որի սրբապատկերից ստացվող ամբողջ եկամուտը պետք է բաժանվի երեք մասի, մեկը՝ եկեղեցու, որում սրբապատկերը գտնվում է, ծախսերի համար, երկրորդ մասն ունենա իրենց եղբայրը՝ քահանա ոմն Գավրասը, իսկ երրորդ մասը իր՝ Աթանասիայի քույր Կալին: Վերջինս իր բաժինը կտակեց վերոհիշյալ Վատացինայի դստեր՝ Աննային: Երբ հարց տրվեց Վուլոտիսին, ինչպե՞ս է նա ձեռք գցել սրբապատկերը, հանել եկեղեցուց, ուր այն գտնվում էր, նա պատասխանեց, թե սրբապատկերը քահանա Գավրասի մոտ էր, նա այն ստացել էր երաշխավորի միջոցով «հզոր և սուրբ կայսրից երեք հարյուր ոսկեդրամի դիմաց»: Վեճը բավականին երկարում է և ի վերջո գալիս են ինչ-որ լուծման: Փաստաթուղթը ստորագրել է Կոստանդնուպոլսի պատրիարքը[61] (Մատթեոս Ա-ը - 1397-1410):

---

58 MM, t. II, p. 391-393.
59 MM, t. II, p. 439-441.
60 MM, t. II, p. 488-490.
61 MM, t. II, p. 513-515.

## 7. ԹՈՌՆԻԿՅԱՆՆԵՐ - ΤΟΡΝΙΚΙΟΙ

*Հրաչյա Աճառյանն իր Հայոց անձնանունների բառարանում որպես Թոռնիկ անվան առաջին կրող նշում է Թոռնիկ Բագրատունուն, որի որդին մասնակցեց արաբ զորավար Մուսեի դեմ պատերազմին՝ 851 թ.: Նա ցույց է տալիս, որ Թոռնիկ անունը կրում էին բացի Բագրատունիներից նաև Արծրունիները ու Մամիկոնյանները: Նա նշում է այդ անունը կրող տասը հոգու, որոնց մեծ մասը այս կամ այն չափով կապ ունեին Բյուզանդիայի հետ: Մեզ հայտնի Թոռնիկյանները սերում են Բագրատունիներից:*

*Ենթադրվում է, որ Թոռնիկյանների (Տարոնացիների մի ճյուղը) բյուզանդական թևը սերում է Տարոնի իշխան Գրիգորի եղբայր Աբու-Ղանիմից: Վերջինս, Տարոնի իշխանությունը Բյուզանդիայի կողմից նվաճելուց (968թ.) հետո, տեղափոխվեց Բյուզանդիա և պրոտոսպաթարի աստիճանն ստացավ: Ա. Կաժդանը, որ տվել է XI–XII դդ. բյուզանդական Թոռնիկյանների ցանկը (27 անձ), նրանց ընդգրկել է իր գրքի Բ գլխում, որ վերնագրված է «Այսպես կոչված հայ-վրացական ընտանիքներ».[62] Եթե նրանցից մեկն ու մեկը բյուզանդական աղբյուրներում կոչված է «իբեր», դա չի նշանակում, որ այդ կոչումը էթնիկոն է, ազգային պատկանելություն է նշանակում: Այդպես էին կոչվում վրացադավան (իմա՝ քաղկեդոնիկ) հայերը[63]:*

*6694 (1186) թ. հունվարի փաստաթղթի համաձայն Իսահակ II Անգելոս կայսեր (1185-1195) «նախապապ» (*προπαππος*) Ալեքսիոս Կոմնենոսը Պատմոս կղզու Ս. Հովհաննես Աստվածաբանի վանքին բազում առանձնաշնորհումներ էր խոստացել, բայց չհասցրեց իրականացնել: Ահա Իսահակ Անգելոսը մարմնավորում է դա, հաստատելով հիշյալ թվականին շնորհված իր խրիսովուլով: Խնդրի կատարման պարտականությունները դրվում են Մեծ լոգարիաստեսի, Մեծ սակելլարի և Ծովային սեկրետների վրա: Փաստաթղթի վրա նշված է և՝ «սևաստոս և որ ի վերա կանիկլիոնի Դիմիտրիոս Թոռնիկ»: Անդրոնիկոս I կայսեր օրոք նա հիշվում է որպես «վելոնի կրիտես»[64]: Իսահակ Անգելոսի օրոք ստացավ «ի վերա Կանիկլիոնի» պարտականությունները, իսկ 1191-ից մինչև մահը (1201 թ. փետրվարը) դրոմոսի լոգոթետ էր[65]:*

*6697 (1188) թ. դեկտեմբերի փաստաթուղթը վերաբերում է Պատմոս կղզու Ս. Հովհաննես Աստվածաբանի վանքի սեփական միջոցներով կառուցած նավերի էքսկուսիային: Կոստանդնուպոլսի Նեորիոն նավահանգստում խարիսխ դցած նորակառույց նավի մեծությունը, ծավալը, բեռնատարողությունը հաշվարկվեց վանահոր խնդրանքով Ծովային սեկրետի մի շարք պետական ծառայությունների պաշտոնյաների կողմից: Հաշվարկողների թվում էր նաև Վասիլ Արմենոպուլոսը: Անադնոստ Հովհաննես Կամատերոսը պրոտոմանդատորիկոնի ծառայությունը իրականացնում էր «մեր հզոր և սուրբ կայսեր մորեղբայր (*θειος*)[66], դրոմոսի լոգոթետ Կոստանդին Թոռնիկի տված լիազորությամբ»[67]:*

*Իսահակ II Անգելոս կայսեր (1185-1195) 6700 (1192) թ. ապրիլի փաստաթուղթը վերաբերում է Ջենովայի հանրապետության վաճառականներին տրված առանձնաշնորհումնե-*

---

[62] Կ а ж д а н. Армяне, с. 47 и сл. *Նրանց թվում է անգամ Մուշեղի որդի, Սասունի իշխան Թոռնիկը:*

[63] *Տե՛ս* Р. Б а р т и к я н. Ο Βάρδας ὁ Βρατζης (*Հայ-բյուզանդական հետազոտություններ. հ. Բ, էջ 277-283: Տե՛ս և* N. A d o n t z. Les Taronites en Armenie et a Byzance.– EAB, p. 197 sqq.: *Ն. Ա կ ի ն յ ա ն. Մատենադրական հետազոտություններ. Վիեննա, 1938, էջ 49-88:* C h a r a n i s. The Armenians, p. 46 sqq. ( *հայերեն թարգմանությունը՝ էջ 96-97*):

[64] Nicetae Choniatae Historia. Recensuit Ioannes Aloysius van Dieten. Berolini et Novi Eboraci, 1975.

[65] MM, t. VI, p. 119-121. *Հմմտ.* Βυζαντινά ἔγγραφα τῆς Μονῆς Πάτμου, τ. Α΄ Αὐτοκρατορικα, σελ. 96.

[66] *Վիճահարույց հարցի մասին՝* К а ж д а н. Армяне, с. 55-57.

[67] MM, t. VI, p. 122-124.

րին՝ Անդրոնիկոս II Անգելոսի բռնատիրությունը տապալելու գործում նրանց ցուցաբերած աջակցության դիմաց: Բանակցություններ վարելու համար Ջենովայից Կոստանդնուպոլիս են գալիս հանրապետության կոմս Մանետոլգոս Բրեսասի պատվիրակները: Կայսեր կողմից բանակցությունները վարելու պարտականությունը գրվել էր «պանսևաստ սևաստ, դրոմոսի լոգոթետ տեր Դիմիտրիոս Թոռնիկի վրա»: Ջենովացիները պահանջում են Անդրոնիկոս II Անգելոսի եռամյա թագավորության տարիներին Կոստանդնուպոլսում սպանված ճենովացիների, ինչպես նաև իրենց կրած նյութական վնասի հատուցում՝ 2028 ոսկեդրամ և այլ բազում առանձնաշնորհումներ: Պահանջում են նաև անցած երեք տարիների և գալիք տասը տարիների համար սոլեմնիա: Համաձայնության փաստաթուղթը կազմել են կայսեր գրամմատիկոս Կոստանդին Պեդիադիտեսը, պրոտոնոտար Աերգիոս Կոլիվան և Կոստանդին Պետրիտեսը: Այն ենթակա էր հաստատման և ստորագրման «պանսևաստ սևաստ, թագավորությանս հարազատ, դրոմոսի լոգոթետ Դիմիտրիոս_Թոռնիկի կողմից»[68]:

Ծովային սեկրետի 6704 (1195) թ. հոկտեմբեր ամսին գրված որոշման մեջ հիշվում են Ալեքսիոս II Կոմնենոս և Իսահակ II Անգելոս կայսրերի կողմից Պատմոսի Ս. Հովհաննես Աստվածաբանի վանքին շնորհված խրիսովուլները, որոնցով վանքին թույլ էր տրվում ունենալ հազար հինգ հարյուր (մոդ) բեռնատարողությամբ երեք նավերի էքսկուսիան, դրանք չդրանցելով պետական մատյաններում: Անցյալում տրված այդ խրիսովուլները վանքը նոր կայսեր (Ալեքսիոս III Անգելոսին) խնդրում է վերահաստատել: Նաև հաշվարկել վանքի ծախսով կառուցված և Կոստանդնուպոլսի Նեորիոն նավահանգստում խարխլված մի նավի ծավալը, բեռնատարողությունը և այլն: Դրան անձամբ մասնակցում էին Ծովային սեկրետի պետ անադնոստ Հովհաննես Կամատերոսը, ով պրոտոմանդատորիկոնի օֆֆիկիոնը վարում էր «պանսևաստ սևաստ և որ ի վերա դեխեոնի, տեր Կոստանդին Թոռնիկի տված լիազորությամբ, պրոաոէյլատիկոնը կայսերական վեստիարիտես Եվստաթիոս Կաստամոնիտեսի լիազորությամբ Վասիլ Արմենոպուլոսը» և այլք[69] (տե՛ս «Արմենոպուլոսի» տակ, N1): Փաստաթուղթը ստորագրողների թվում էր և Գեորգիոս Ա.. Ն, որ Ծովային սեկրետը վարում էր պանսևաստ սևաստ և Վարդարիոտների պրիմիկերիոս Կոստանդին Տարոնացու տված լիազորությամբ:

Թեոդորոս I Լասկարիս կայսեր (1208–1222) 1221 թվակիր խրիսովուլ սիգելը հաստատում է Պատմոս կղզու Ս. Հովհաննես Աստվածաբանի վանքի Մեանդրոս և Պալատիոն գետերի միջև գտնվող և Պիրգոս կոչվող վայրի վրա ունեցած իրավասություններն ու դրա անձեռնմխելիությունը պետական պաշտոնյաների և այլոց ոտնձգություններից: Փաստաթուղթը ստորագրել է կայսրը և այն գործի է դրվել Դիմիտրիոս Թոռնիկի միջոցով (δια του Τορνίκη Δημητρίου)[70]: Միքայել Խոնիատես պատմիչի ասելով, նա Կոստանդին Թոռնիկի որդին էր և թոռը Մեծ լոգոթետ Դիմիտրիոս Թոռնիկի: Թեոդորոս I Լասկարիս կայսեր մեսադոնն էլ էր[71]:

Հովհաննես III Դուկաս Վատացիս (1222–1254) 1229 (կամ 1244) թ. ապրիլի փաստաթղթերով կայսրը պաշտպանում է Պատմոսի Ս. Հովհաննես Աստվածաբանի վանքի տիրույթները ոտնձգություններ կատարողներից, այդ թվում և պինկերնես, Թրակեսիոն բանակաթեմի դուքս Հովհաննես Կոմնենոս Կանտակուզենոսից: Փաստաթուղթը գործի է դրվել «Դիմիտրիոս Թոռնիկեսի միջոցով» (διὰ του Τορνίκη Δημητριου)[72]:

Հիշյալ Դիմիտրիոս Թոռնիկը գործի է դրել նաև կայսեր կողմից Պատմոս կղզու վերոհիշյալ վանքին շնորհված՝ Մեանդրոս և Պալատիոն գետերի միջև գտնվող մետոխիոնին վերաբերող փաստաթուղթը[73]: Դրան նախկինում տիրում էր Կոստանդնուպոլսի Պանախրան-

---

[68] MM, t. III, p. 26-27, 32.
[69] MM, t. VI, p. 127-130.
[70] MM, t. VI, p. 180-182.
[71] Βυζαντινά έγγραφα Μονής Πάτμου, σελ. 123.
[72] MM, t. VI, p. 183.
[73] MM, t. VI, p. 177.

տոս վանքը, իսկ տվյալ պահին ազատ էր և ոչ ոքի չէր պատկանում: Փաստաթղթի հրատարակիչների ենթադրության համաձայն, այն գրվել է հավանաբար 1216 թ.:

Անթվակիր, հավանաբար 1233 թ. գրված կայսերական փաստաթուղթը վերաբերում է Զմյուռնիայի շրջանի Լեմվոն Աստվածածնի վանքի և կայսերական վեստիարիտես Հովհաննես Ռավգոկանակակեսի միջև Վարի (Բարե) կամ Մելա անունը կրող գյուղի սահմաններում գտնվող հողատարածության շուրջ գնացած վեճին: Հողը վանքին էր նվիրաբերել կայսրը, բայց դրա վրա իր իրավունքներն էր պաշտպանում հիշյալ Ռավգոկանակակեսը: Խնդիրը քննության ենթարկեց «իմ թագավորության ամենացանկալի հարազատ եղբայր տեր Դիմիտրիոս Թոռնիկ Կոմնենոսը»: Փաստաթղթի վերջում կայսերական մոմե կնիքը կար և «ինչպես ընդունված է մեսազոնների վերաբերյալ՝ «Դիմիտրիոս Թոռնիկեսի միջոցավ» մակագրությունը»[74]:

Զմյուռնիայի շրջանի Լեմվոն Աստվածածնի վանքի վանահայր տեր Պավլոսը կայսրին ներկայացրեց կայսերական մի կարգագրություն, ինչպես և «հզոր և մեր սուրբ տիրոջ կայսեր ամենացանկալի հարազատ եղբայր ամենաազնվագույն տեր Դիմիտրիոս Թոռնիկ Կոմնենոսի կողմից ստորագրված մի կարգագրություն, ուղղված «պանսեբաստ սեբաստ Զմյուռնիայի բերդատեր Հովհաննես Ալոպոսին»: Նրանում ասվում է կայսեր կողմից վանքին նվիրաբերված վեց լուծ հողի մասին: Փաստաթուղթը թվագրված է 6742 (1234) թ. մարտ և մայիս ամիսներով[75]:

Նույն տարվա մայիս ամսով թվագրված փաստաթուղթը կայսեր կողմից Լեմվոնի վանքին հողատարածության նվիրատվություն է: Դրա հետ վանքին են շնորհվում և այնտեղ գտնվող բաղնիքը, պարտեզը և դրսեցի ազատ պրոսկաթիմենոսները՝ պետական ցուցակներում չգրանցված (τῷ δημοσίῳ ἀνεπιγνώστους): Նրանք իրենց աշխատանքով վանքին օգուտ են բերելու: Ստորագրել է կայսրը, իսկ ներքևում, ինչպես ընդունված է մեսազոնների համար «Դիմիտրիոս Թոռնիկի միջոցավ»-ը[76]:

6737 (1229) 6740 (1232) և 6742 (1234) թթ. Զմյուռնիայի Լեմվոն Աստվածածնի վանքի ձկնորսարանների վերաբերյալ հրապարակվել է երեք հրամանագիր (πρόσταγμα): Երկրորդում վանքին թույլատրվում է կառուցել ձկնորսարան՝ ազատված հարկերից և այլ վճարներից: Կայսրը կարգադրում է պանսեբաստ սեբաստ պարակիմոմենոս Ալեքսիոս Կարտերոսին պաշտպանել վանքը հնարավոր ոտնձգություններից: Հրամանագիրը ստորագրել էր կայսրը, այն ուներ կայսեր մոմե կնիքը և ինչպես ընդունված է՝ «Դիմիտրիոս Թոռնիկի միջոցավ»-ը[77]:

Վերջապես կայսերական մի անթվակիր հրամանագիր թույլ է տալիս Լեմվոն վանքի վանահայր Գերասիմոսին վանքի սեփականությունը հանդիսացող տարածքում, իր կարողությունների սահմաններում, հաստատել դրսեցի պրոսկաթիմենոսներ վանքին ծառայելու համար, պահպանի նրանց ամեն տեսակի պարհակներից: Փաստաթուղթը ստորագրվել էր կայսեր կողմից, ուներ կայսեր մոմե կնիքը և «ինչպես ընդունված է մեսազոնների համար» «Դիմիտրիոս Թոռնիկի միջոցավ»-ը[78]:

6742–6747 (1234–1239) թթ. ընթացքում վեց փաստաթուղթ վերաբերում է Զմյուռնիայի Լեմվոն Աստվածածնի վանքի մոտ գտնվող Սֆուրնու վայրին: Քանի որ այդ վայրի բնակիչների և վանքի միջև վեճը գնալով շատ մեծ ծավալ ստացավ, «մեր հզոր և սուրբ տեր և կայսր իր ամենացանկալի հարազատ եղբայր, ամենաազնվագույն Թոռնիկ Կոմնենոսին կարգադրեց ուսումնասիրել հարցը»: Սֆուրնու վայրը պատկանում էր «մեր հզոր և սուրբ կայսեր լիզիոս կավալլարիոս Սիրգարիին (սիր Գարի, լատին է – Հ. Բ.), այնտեղ

---

[74] MM, t. IV, p. 198-200.
[75] MM, t. IV, p. 146-150.
[76] MM, t. IV, p. 145.
[77] MM, t. IV, p. 240-241.
[78] MM, t. IV, p. 248-249.

բնակվում էին նրա պարիկոսները: Որոշվեց պարիկոսներին հեռացնել այնտեղից: Փաստաթուղթը ստորագրել է «Զմյուռնիայի մետրոպոլիտ Գեորգիոսը»[79]:

Նույն 1234-1239 թթ. միջև գրված փաստաթուղթը կայսերական ստորագրությամբ նվիրատվություն է Զմյուռնիայի Ս. Գեորգ Էքսոկաստրիտեսի վանքի մետոխիոնին: Այն ուներ կայսեր մոմե կնիքը և «Դիմիտրիոս Թոռնիկի միջոցավ» մակագրությունը[80]:

Կայսեր կողմից վերանորոգված Լեմվոն վանքի վանահայրը հայտնում է կայսեր, որ արդար ճանապարհով Ֆինիկոս վայրի Պանարետոս վայրում գնել է ձիթենիներ, իսկ Մանտեայում՝ Ս. Պանտելեիմոնի մետոխիոնը և խնդրում է տվյալ, որ ունեցվածքը հաստատվի կայսերական որոշմամբ: Ստորագրել է կայսրը (անունը չի հիշված): Հատուկ ցույց է տրված, որ փաստաթղթի ներքևից կախված է մոմե կնիք, և ինչպես սովորաբար լինում է կայսերական պարտավորություններին ու հրամանագրերին, նշված է «Դիմիտրիոս Թոռնիկի միջոցավ»-ը[81]:

Հավանաբար 1250 թ. է վերաբերում մի փաստաթուղթ, որի համաձայն, Լեմվոն վանքի վանահայրը փորձում էր յուրացնել կայսերական վեստիարիտես Հովհաննես Ռավգոկանակակիսի կալվածքները: Վերջինս կայսերական որոշում ներկայացրեց, որի համաձայն վիճահարույց հարցը քննելու համար նշանակվեց « կայսեր շատ ցանկալի քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս, տեր Հովհաննես Դուկաս Կուրտիկը»: Վեճը լուծվում է հօգուտ Ռավգոկանակակիսի: Փաստաթուղթը կրում էր կայսեր կնիքը և ինչպես ընդունված է մեսազոնների համար, նշված էր «Դիմիտրիոս Թոռնիկի միջոցավ»-ը[82]:

Բացի բազմիցս հիշված Դիմիտրիոս Թոռնիկից՝ Կոստանդին Թոռնիկի որդուց, Մեծ լոգոթետ համանուն Դիմիտրիոս Թոռնիկի թոռից, XIII դ. 50-ական թվականների մի փաստաթղթում հիշվում է «մեր հզոր և սուրբ տիրոջ, կայսեր ծառա և եղբորորդի (կամ քեռորդի - εξαδελφος – Հ. Բ.), Թրակեսիոն բանակաթեմի դուքս և հրամանատար Հովհաննես Թոռնիկը»: Զմյուռնիայի շրջանի Լեմվոն Աստվածածնի վանքի վանականները դիմում են նրան և բողոքում վանական Մաքսիմոսի վանքին նվիրաբերած կալվածքներն ու ձիթենիները վերջինիս հարազատ եղբայրներ Վասիլի և նրա որդի Կոստանդնի կողմից հափշտակվելու և վաճառվելու դեմ: Վեճը լուծվում է վանականների օգտին: Փաստաթղթի տակ ստորագրել է վերոհիշյալ Հովհաննես Թոռնիկը[83]:

Անթվակիր մի հրամանագիր և հաստատագիր վերաբերում է նույն վանքի կայքի և պարիկոսների վրա ունեցած իրավունքներին, խրիսովուլներին և որոշումներին: Նրանում հիշվում են, որպես հանգուցյալ, Հովհաննես III Դուկաս Վատացիսը (1222–1254), նա համարվում է իշխող կայսրի հորեղբայրը (կամ մորեղբայրը – θειος Հ. Բ.), և Թեոդորոս II Դուկաս Լասկարիսը (1254–1258), որպես իշխող կայսրի հորեղբորորդի (կամ մորեղբորորդի - ἐξάδελφος – Հ. Բ.): Հետևաբար փաստաթուղթը գրված է 1258-ից հետո: Այն վերաբերում է «Զմյուռնիայի լեռան վրա» տեղակայված Լեմվոնի Ս. Աստվածածնի վանքի ունեցվածքին: Վանահայր հիերոմոնախ Կիրիլլոսը և նրան ենթակա վանականները նոր կայսրից խնդրում են, որ նա հաստատի նախկին կայսրերի շնորհած խրիսովուլները:

Ստորագրել է կայսրը՝ ամենայն հավանականությամբ Հովհաննես IV Լասկարիսը (1258-1261), կցված էր նրա մոմե կնիքը և ինչպես ընդունված է մեսազոնների համար՝ «Անդրոնիկոս Կոմնենոս Թոռնիկի միջոցավ»-ը[84]:

Վերջապես հետաքրքիր է նշել, որ Նիկիա քաղաքում գոյություն ուներ «Թոռնիկի վանք»[85], հայտնի չէ ո՞ր Թոռնիկյանի կողմից էր կառուցված:

---

79 MM, t. IV, p. 41-43.
80 MM, t. IV, p. 44-45.
81 MM, t. IV, p. 138-139.
82 MM, t. IV, p. 219-220.
83 MM, t. IV, p. 73-74.
84 MM, t. IV, p. 221-222.
85 Βυζαντινά ἔγγραφα τῆςΜονῆς Πάτμοι. Τ. Ά Αὐτοκρατορικά, σελ. 138, n. 5.

## 8. ԻՍԱՎԵՐ - Ι Σ Α Β Ε Ρ

*Անվան առաջին կեսը՝ Իսա, արաբերեն Հիսուս անունն է: Հր. Աճառյանը իր Հայոց անձնանունների բառարանում Իսավեր անուն չի հիշում, նշում է Իսավերդի (նշանակում է Հիսուսի տվածը), որպես երկրորդ բաղադրիչ թուրքերեն «վերդի» տվեց: Բայց դա շատ ուշ շրջանում է հիշված, այն էլ ոչ առանձին: Հայտնի է Իսավերդենց ազգանվամբ ունիթոռ հայ (XVIII դ. կեսեր):*

*Ռիկարդո Օրսինիի Կեֆալոնիայի եպիսկոպոսության ենթակա կալվածքների 1262 թ. կազմված ցուցակում հիշված է Էսլիրոսի Ավլոնի թեմում Վելոնի կոչված երկու մոդ տարածությամբ մի կալվածք, որը ենթադրելի է նվիրաբերել Իսավեր Արտավազդը (*ἀπο ἀφιερώσεως 'Ισαβερη τοῦ 'Αρταβάσδου*)[86] բառացի՝ «Արտավազդի Իսավերը»: Կեֆալոնիայի կղզու հյուսիս-արևելյան կողմի Ատրոս լեռան թեմի Ս. Աստվածածնի վանքի կալվածքների թվում հիշվում են երեք մոդ տարածությամբ* Իսավերի *նվիրաբերած կալվածքները (*χωράφια τα ἄπερ ἔχομεν ἀπο του'Ισαβέρη*)[87]: Ըստ երևույթին երկուսն էլ նույն անձնավորությունն է: Բացի այդ, վերոհիշյալ Ավլոնի թեմում հիշված է և մի՝ այլ կալվածք, որ կոչված է* «Իս(ավերի) *կալվածք» (*χωράφιον τοῦ 'Ισ(αβέρη)[88]*: Փակագծերի մեջ առնված տառերը հրատարակիչներինն են :*

## 9. ԼԵՎՈՒՆ - Λ Ε Β Ο Υ Ν Η Σ

*Հունական* Λεων *(Առյուծ) անունը: Հայերեն լեզվի օրենքների համաձայն, երբ օտար անվան մեջ առկա են կողք կողքի երկու և ավելի ձայնավորներ, բաժանվում են բաղաձայնով (կամ կիսաձայնով): Ուստի* Λεων*-ը դառնում է Լևոն (համտ՝* 'Ιωάννης *- Իոաննես - Յովհաննէս,'*Ιωακείμ *- Իոակիմ - Յովակիմ և այլն: Գալով* Λεων*-ին, թեև այն տառադարձված է Լևոն, Կիլիկիայի հայկական պետության մեջ իշխած (թագավորած) Լևոնները բյուզանդական աղբյուրներում կոչված են* Λεβουνης *- Լևունես: Բյուզանդական պատմիչ Նիկետաս Խոնիատեսն, օրինակ, Լևոն I-ին և Լևոն II-ին կոչում է* Λεβούνης*- Լևունես*[89]*: Այդ իսկ պատճառով բոլոր հիմքերն ունենք մեր խնդրո առարկա բյուզանդական փաստաթղթերում հանդես եկող (որպես տոհմանուն)* Λεβουνης *-ներին հայ համարել, նամանավանդ մեկի անունը Վարդ (*Βαρδας*) է:*

*1225 և 1235 թվակիր փաստաթղթերում և այդ տասնամյակում հիշված հավանաբար նույն անձնավորությունը կոչված է* Իսահակ Լևունեսի *(*'Ισαακιος του Λεβουνη*):*

*6740 (1225) թ. օգոստոս ամսին վանական Նիկանդրոս Գունարոպուլոսի կազմած կալվածագիրը վերաբերում է Դեմոսիատոս գետից այն կողմ դտնվող կալվածքների վաճառքին: Շրջանը Զմյուռնիան է, քանզի վաճառողը երդվում է «կայսեր մտերմագույն» պանսևաստներին, այդ թվում և «կայսերական վեստիարիտեսներից»* Իսահակ Լևունեսին*: Հիշյալ կալվածքները Զմյուռնիայի վախճանյալ մետրոպոլիտ Կոստանդին Պարթենեսը անօրինաբար հափշտակել էր: Եղածների մեջ կային և այնպիսիք, որ պատկանել են վանական Նիկանդրոս Գունարոպուլոսին, որոնք և վաճառում է տեր Վասիլ Վլատերոսին, Ռավդոկանակակեսի փեսային: Վկաների թվում ամենից առաջ հիշվում է Զմյուռնիայի մետրոպոլիտության մեծ էկոնոմ (*μεγας οἰκονόμος*) Լևոն Արդրոսը (*Λεων ὀ 'Αργρός*): Վաճառողը Զմյուռնիայի արքեպիսկոպոսին (տեր Գեորգիոս) հիշում է որպես «իմ սրբազնագույն տեր ու տիրակալ պանիպերտիմոս (*πανυπέρτιμος*)*[90]*:*

---

[86] MM, t. V, p. 48.
[87] MM, t. V, p. 63.
[88] MM, t. V, p. 24.
[89] Nicetae Choniatae Historia..., p. 21, 522.
[90] MM, t. IV, p. 189-190.

*Նույն Իսահակ Լևոնեսը, ինչպես ասվեց, հիշվում է և 6743 (1235) թ. մարտի փաստաթղթում, որը վերաբերում է Զմյուռնիայի շրջանի Լեմվոնի Աստվածամոր վանքի կալվածքներին: Առանձին կալվածքներ գտնվում էին «կայսերական վեստիարիտես տեր Իսահակ Լևոնեսի կալվածքների հարևանությամբ»* (χωραφιον τοῦ βασιλικοῦ βεστιαρίτου κυροῦ Ἰσαακίου τοῦ Λεβουνη. Τα δικαια τοῦ Λεβουνη. Τα χωράφια τοῦ Λεβουνη):

*Իսահակ Լևոնեսի կալվածքները հիշվում են և Զմյուռնիայի նույն Լեմվոն վանքի կալվածքներին վերաբերող անթվակիր մի փաստաթղթում: Այնտեղ ցույց է տրված, որ մի կալվածք գտնվում է «կայսերական վեստիարիտես տեր Իսահակ Լևոնեսի կալվածքներին կից»* (ἀκουμβίζοντος εἰς τὰ χωραφια τοῦ βασιλικοῦ βεστιαρίτου κυρου Ἰσαακιου τοῦ Λεβουνη. Τα δικαια τοῦ Λεβουνη)[91]: *Փաստաթղթի վերջում հիշվում են վկաները «ի Ներկայության Զմյուռնիայի սրբազնագույն մետրոպոլիտության ամենաաստվածասեր վիճակավորների և գլխավորների* (ἀρχόντων): *Վերջում կա «Զմյուռնիայի մետրոպոլիտի ստորագրությունը»*[92]:

*Իսահակ Լևոնեսին է հասցեագրված կայսերական մի հրամանագիր, որով քննադատվում է հիշյալ պանսևաստ սևաստ տեր Իսահակ Լևոնեսը: Նա հարկ էր դրել կայսերական Լեմվոն վանքին պատկանող Մելա գյուղի վրա, թեև այն ազատված էր դրանից*[93]:

*6792 (1283) թ. նոյեմբերի կալվածագիրը վերաբերում է ոմն Թեոդորոս Գորդատոսի տների և դրանց կից հողերի վաճառքին: Խնդրո առարկա անշարժ գույքի կեսը հիշյալ Թեոդորոսը իր կենդանության օրոք նվիրել էր Զմյուռնիայի Լեմվոնի Աստվածածնի վանքին, մնացած կեսը նրա ժառանգները քսանհինգ ոսկեդրամի դիմաց վաճառում են հիշյալ վանքին: Շարունակության մեջ ասվում է, որ «Լևոնինեն (Լևոնեսի իգականը) բակում ունի մեկ աղյուսածածկ և խոտածածկ տուն, մեկ ընկուզենի, մեկ թզենի, երկու նռենի և երկու կաղնի»: Լևոնինեն հավանաբար վաճառողների հարսն է: Վկաների թվում հիշվում է «Զմյուռնիայի սրբազնագույն մետրոպոլիտության տաբուլարների պրիմիկերիոս Նիկոլայոս Ֆիլոկինեգիտեսը*[94]:

*Վերջապես մի անթվակիր՝ XIII դ. երեսնական թվականների, դրություն վերաբերում է Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիային ենթակա Զմյուռնիայի Լեմվոնի Աստվածածնի վանքից ոմն Նիկոլայոս Կազանեսի հափշտակած ձիթենիներին: Խնդրին միջամտել է պատրիարքը, որը հանձնարարել է Զմյուռնիայի մետրոպոլիտ տեր Կոստանդինին և Ս. Սոֆիայի կալվածքների հսկիչ տեր Ալեքսիոս Կաստամոնիտեսին զբաղվելու այդ հարցով: Խոսքը վերաբերում է 39 ձիթենիների, որոնք և վերադարձվում են վանքին: Ստորագրել են Զմյուռնիայի կատեպաններ Վարդաս Լևոնեսը* (Βάρδας ὁ Λεβουνης) *և Հովհաննես Գալենոսը*[95]:

*Մեկ անգամ մի հայի անունը հիշվում է հունարեն* Λέων *(Լևոն) ձևով և վերաբերում է Կեֆալոնիայի եպիսկոպոսության 1262 թ. կալվածքների ցուցակին: Խոսքը Լևոն Մանդակի* (Λέοντος του Μανδακίου) *տան մասին է*[96]:

## 10. ԽԱՉԻԿ - ΧΑΤΖΙΚΗΣ, ԽԱՉԱՆ - ΧΑΤΖΑΝΗΣ

*Խաչիկ անձնանունը մեղանում գործածական է VIII դ.: Ինչ վերաբերում է Խաչանեսին, այն հունարենում բերված է Խաչան ձևով («էս»-ը հունարենի արական սեռի առաջին հոլովման եզակի ուղղականի վերջավորությունն է): Շատ ուշ շրջանում 1561 թ. հիշված է մի Խաչանէս, որի անունը Հր. Աճառյանը համարում է «Խաչ», իսկ «-անէս» վերջավորությունը կազմված Յովհաննէս, Վրթանէս անունների ազդեցությամբ: Մեր Խաչանեսը չի հաս-*

---

[91] MM, t. IV, p. 10.
[92] MM, t. IV, p. 143.
[93] MM, t. IV, p. 251-252.
[94] MM, t. IV, p. 99-101.
[95] MM, t. IV, p. 62-63.
[96] MM, t. V, p. 25.

տատում դա, քանզի հունարենում Խաչան է, «էս»-ն է հունարենի վերջավորությունը, և ոչ «անէս»-ը:

Մեր փաստաթղթերում Խաչիկն ու Խաչանեսը արդեն անձնանուններ չեն , այլ ազգանուն-տոհմանուններ: Ալեքսիոս III Անգելոս կայսեր (1195-1203) 6706 (1197) նոյեմբեր թվակիր կարգադրությունը վերաբերում է Պատմոս կղզու Ս. Հովհաննես Աստվածաբանի վանքի վանահայր Արսենիոսի[97] կայսեր ուղղված խնդրանքին՝ հաստատել անցյալում թագավորած կայսրերի՝ Ալեքսիոս III-ի «Նախապապի», սլապի և հարազատ եղբոր[98] և իր իսկ Ալեքսիոս III-ի վանքի սեփական միջոցներով ձեռք բերված, առավել կամ պակաս քան հինգ հարյուր մոդ բեռնատարողությամբ նավ ունենալու մասին ընձեռած իրավունքը: Նրան իրավունք էր տրված նավարկելու ուր որ ցանկանա՝ արևելյան երկրներ, թե արևմտյան, բոլոր կղզիները , իսկ Կոստանդնուպոլսում խարիսխ գցել տարեկան մեկ անգամ: Նա ազատված էր ամեն տեսակի հարկերից ու մաքսերից: Վանքի վանականներին իրավունք էր վերապահված հիշյալ նավի հնանալու կամ նավաբեկման պարագայում կառուցեն նոր նավ՝ նույն բեռնատարողությամբ և նույն իրավունքներով: Տարբեր շրջանների դուքսերը, հարկահանները, մաքսավորները նավի վրա վանքի ունեցած իրավունքների խախտման դեպքում պարտավոր են քառապատիկ չափով վնասուց հատուցում տալ: Վնասը հատուցելու հսկողությունը դրվում էր ստրատիոտիկոնի լոգոթետի և մեծ լոգարիաստեսի վրա: Ստորագրել է Ալեքսիոս III Կոմնենոս կայսրը, խրիսովուլ փաստաթուղթը գրանցվել մեծ լոգարիաստեսի սեկրետում Թեոդորոս Խացիկեսի (Θεόδωρος Χατζικης) (Խաչիկի) կողմից: Հասկանալի է, որ հիշյալ տարում՝ 1197-ին գենիկոնի սեկրետի գլխավորը Թեոդորոս Խաչիկն էր[99]:

Նշենք այստեղ, որ Ալեքսիոս III Անգելոսի հիշյալ խրիսովուլի դիտական-քննական հրատարակությունն իրականացրել է Էրա Վրանուսին[100]:

Հոնիական ծովի Կեֆալոնիա կղզու եպիսկոպոսության կալվածքների ցուցակում (1262) հիշված է «Խաչիկի այգին» (ἄμπελος τοῦ Κατζῆκου) մեկ մոդ տարածությամբ[101]:

Վերոհիշյալ Թեոդորոս Խաչիկի ընտանիքից հայտնի է և մի ուրիշը՝ Անդրոնիկոս Խաչիկը, որդին Դիմիտրիոս Խաչիկի: Փաստաթուղթը գրված է 6902 (1394) թ. հունվար ամսին, փաստ, որ վկայում է հիշյալ ընտանիքի երկարամյա գոյատևման մասին: Գրությունը վերոհիշյալ երկու անձանց կողմից կազմված և ստորագրված խոստման գիր է, որը թարգմանությամբ բերում ենք ստորև. «Մենք, Դիմիտրիոս Խաչիկը և Անդրոնիկոսը, մեր սրբազնագույն տիրոջ՝ Տիեզերական պատրիարքին խոստանում ենք, եթե բացահայտվենք որպես արծաթյա իրերի, կամ Ս. Սոֆիայի տաճարից կամ որևէ այլ արգո վանքից կամ տաճարից գողացված իրերի գնորդներ, [պարտավորվում ենք] Աստծո ամենասուրբ եկեղեցուն վճարել երկու հարյուր ոսկեդրամ տուգանք: Այժմ մենք արդարացված ենք, վնասի դիմաց հատուցում չենք տալու և չենք պատժվելու, քանզի Թերապիոտիսա Աստվածածնի սրբապատկերը գողացած Պալատինոսը խոստովանեց իր արարքը և մենք ոչ մի պատժի չենթարկվեցինք:

---

[97] Արսենիոսը աշակերտն էր անցյալում Պատմոսի վանքի վանահայր, հետագայում Երուսաղեմի պատրիարք Լեոնտիոսի: Արսենիոսը վանահայր դարձավ 1183 թ. մինչև առնվազն 1200 թ.: Նրա նախաձեռնությամբ 1200 թ. կազմվեց վանքի ձեռագրերի, փաստաթղթերի, սրբապատկերների և սրբազան սպասքի մանրամասն ցուցակը (հրատարակված Շ.Դիլի կողմից Byzantinische Zeitschrift-ում, հ. 1, 1892, էջ 488 և հտ.):

[98] Նախապապը, Ալեքսիոս I-ն է (1081-1118), որի տված խրիսովուլը պահպանվել է և թվարկված է 1088 թ., պապը՝ Հովհաննես II-ը (1118-1143), նրա խրիսովուլը՝ 1186 թ.: «Իր» նախկինում հրապարակած խրիսովուլը տրված պետք լինի 1195-ից հետո և 1197 թ. նոյեմբերից առաջ: Տե՛ս Βυζαντινα έγγραφα τῆς Μονῆς Πάτμου. Α΄. Αὐτοκρατορικά. Διπλωματική ἔκδοσις, Γενική εἰσαγωγή, εὑρετήρια, πίνακες ὑπο Ἔρας Βρανούση. Ἀθῆναι 1980, σελ. 105.

[99] MM, t. VI, p. 137-139.

[100] Βυζαντινὰ ἔγγραφα τῆς Μονῆς Πάτμου, σελ. 103-112.

[101] MM, t. V, p. 26. Նույն փաստաթղթում հիշված է և Κατζηκνα-յի կալվածքը, ամենայն հավանականությամբ՝ Խաչիկի (էջ 36):

Եթե ապագայում մեզ բացահայտեն նման արարք կատարած, պարտավորվում ենք հատուցել մեր խոստացածը՝ երկու հարյուր ոսկեգրամը: Ի հաստատումն մեր այս խոստման, այն ձևակերպեցինք գրավոր և ստորագրվեց մեր ձեռամբ երկրորդ ինդիկտիոնի հունվար ամսին: +Դիմիտրիոս Խացիկես + +Διμίτριος ο Χατζυκης+ + Անդրոնիկոս Խաչիկես + + Ανδρονικος ὁ Χατζήκης+[102]»: Երկու հարյուր ոսկեգրամը այդ ժամանակների համար հսկայական գումար էր, որ վկայում է Խաչիկների բավականին ունևոր լինելու մասին:

## ԽԱՉԱՆԵՍ - ΧΑΤΖΑΝΗΣ

Բացի վերոհիշյալ Խաչիկներից, հայտնի է և Գեորգիոս Խաչան ազգանվամբ մեկը: Փաստաթուղթը, որ կազմված է 6721 (1213) թ. փետրվարին, իրենից ներկայացնում է կալվածքի գնման կայքագիր «ամենափառավորյալ պրոտովեստիարիոս տեր Գեորգիոս Եվնուխոսի»: Նշվում է կալվածքի տեղադրությունը: Այն գտնվում է Կանոպայի (Κανοπα) շրջանում, արևմտյան կողմից սահմանակից էր Գեորգիոս Խացանեսի (Γεώργιος Χατζάνης) կալվածքին[103]: Եթե նկատի ունենանք ստորագրող վկաներին և նրանց պաշտոնները՝ Եվգենիոս Կիսսիանոս՝ Միլետոսի մետրոպոլիտ, Միքայել՝ Միլետոսի մետրոպոլիտության քահանա, Կոստանգին Միրսինիոտես (Մերսինացի)՝ Միլետոսի մետրոպոլիտության իրավաբան և դևտերևոն, ապա Կանոպան գտնվում էր Փոքրասիական Թերակղզու Էգեական ծովի ափին Միլետոսի տարածքում:

## 11. ԾԵՐԵՆՑ - ΤΖΕΡΕΝΤΖΗΣ

Նման անուն Հրաչյա Աճառյանի Անձնանունների բառարանում բացակայում է: Բայց հայ գրող, հրապարակախոս, վիպասան Հովսեփ Շիշմանյանն իր կեղծանունը՝ Ծերենց ո՞րտեղից է վերցրել, ինձ հայտնի չէ: Մեր գեպքն իր տեսակի մեջ եզակի է:

«Ծերենց» որպես ազգանուն հանդիպում է 6847 (1338) թ. նոյեմբերի մի սիգիլում, որ տրվել է Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիա տաճարի սրբազնագույն հոգևոր ատյանի կողմից: Փաստաթղթում ասված է. «Գևորգ Ծերենցը (Τζερεντζης Γεωργιος) բացահայտվեց հմայություններ, գուշակություններ, ամբարիշտ այլ արարքներ գործելիս: Նա անգամ Քրիստոսի՝ ճշմարիտ աստծու ամենասուրբ անունը գրել, ապա այն թանաքով ջնջել էր, գիվակչությամբ գբաղվել: Այդ բոլորի համար ահա նա խիստ պատժվել է: Նրան տարան սրբազան ատյանը՝ բուժում ստանալու, իր սխալները խոստովանելու և ապաքինվելու համար: Կարգագրում ենք, որպեսզի տաճարում պատարագի ժամանակ նա մնա եկեղեցուց դուրս, եկեղեցի մտնողներից, դուրս եկողներից քավություն աղերսի: Հավարտ պատարագի, նա կարող է եկեղեցի մտնել, երկրպագել, համբուրել սրբապատկերները: Նա պարտավոր է խստագույնս ծոմ պահել՝ չուտել միս, պանիր, հավկիթ, չխմել կաթ, օրական հարյուր անգամ ծնրադրություն կատարել, բացի շաբաթ և կիրակի օրերից, տերունական տոներից, կորովագին ու սրտակոտոր կրկնել «Տէր ողորմեա»-ն: Այնուհետև նա պետք է ողջամիտ կյանք վարի, եթե չի կարող իրեն զսպել, թող օրինական կարգով ամուսնանա, այդ մասին տեղյակ պահելով աստծո սուրբ եկեղեցուն, ողորմություն տա՝ իր կարողությունների չափով»[104]: Գևորգ Ծերենցը գրավոր խոստանում է կատարել վերոհիշյալ ամեն ինչը:

Հաջորդ փաստաթուղթը, որ վերաբերում է նույն հարցին, տրվել է նույն թվականին, Հովհաննես ԺԴ Կալեկաս պատրիարքի (1334-1347) կողմից, ուր ասված է. «Գևորգ Ծերենցը անօրեն ու անտեղի արարքներ դործելու պատճառով, հոգևոր ատյանի որոշմամբ, եկեղեցուց էլ վտարվեց: Փախուստի դիմելու փորձ կատարելու համար նա բանտարկվեց: Իր ազգակիցների դիմումով ու խնդրանքով հզոր և սուրբ կայսեր որոշմամբ նրան ազատ ար-

---

[102] MM, t. II, p. 203.
[103] MM, t. VI, p. 160-162.
[104] MM, t. I, p. 180-181.

ձակեցին: Նրա հարցը քննության դրվեց մեր սուրբ և սրբազան հոգևոր խորհրդում: Ըստ իր գործած զանցանքների, սահմանվեց եկեղեցու ընդունած կարգի համաձայն էպիտիմիան[105]: Իր ազգակիցները երաշխավորություն էլ տվեցին, թե խոսք են տալիս հսկել նրան, ինչպես դա պահանջվեց աստծու եկեղեցուց[106]: «Ազգակից» բառը (բնագրում οι κατα γενους αυτω կամ οἱ ἀπο τοῦ γενους αὐτοῦ) կարող է ոչ միայն «ազգական» իմաստով գործածված լինել, այլև նույն ազգին (էթնոսին) պատկանած, այսինքն՝ հայազգի:

## 12. ԿՈՒՐՏԻԿՆԵՐ - ΚΟΥΡΤΙΚΙΟΙ

Հրաչյա Աճառյանը բյուզանդական Կուրտիկ ձևը չդիտե, դիտե Քուրդիկը և այդ անունով հիշում է Քուրգիկ իշխան Մամիկոնյանին (808 թ.) և նույնանուն Մամիկոնյանին, որին համարում է վերջինը, որ 852 թ. գլխատվեց Բուղայի կողմից: Նա դիտե բյուզանդական «Քուրգիկին», Լոկանայի կառավարչին (870 թ.): Անվան գրության այդ ձևը Հ.Աճառյանը վերցրել է Մ. Ջամչյանից, բայց հունարեն բնագրում Κουρτίκιος[107] է - Կուրտիկիոս, Ջամչյանն է այն տառադարձրել հայերեն: Հ.Աճառյանն ընդամենը երեք Քուրդիկ գիտե, այնինչ բյուզանդական աղբյուրներում նրանք (Կուրտիկիոս անվամբ) չատ-չատ են և անունը որպես կանոն գործածված է իբրև տոհմանուն:

Հայկական աղբյուրներում ավելի հաճախ է հիշվում Քուրդ անունը: Հայտնի են Քուրդ իշխան Սյունյաց (+ 735), Քուրթ Ամատունի (895), Քուրդ Արծրունի (1178), Քուրդ Արծրունի (XIII դ. սկիզբ), Քուրդ իշխանաց իշխան (1176), Քուրդ I և Քուրդ II Վաչուտյաններ, վերջինիս թոռ Քուրդ իշխանաց իշխան Անբերդցի և ուրիշներ[108]:

Կուրտիկները ըստ Ժ. Մարկվարտի Հայաստանից Բյուզանդիա տեղափոխվեցին Վասիլ I կայսեր օրոք (867-886)[109]: Նրանցից առաջինին հիշատակում է Թեոփանեսի Շարունակողը: Լևոն VI կայսրը բուլղարների թագավոր Սիմեոնի դեմ ուղարկում է «բազում զորք ու հրամանատարներ: Մակեդոնիայում տեղի ունեցած ճակատամարտում հռոմայեցիները պարտվում են, հենց Կրինիտեսը[110], ինչպես և հայազգի Կուրտիկեսը և չատ ուրիշներ սրախողխող են լինում»[111]: Մի այլ «հայազգի Կուրտիկես» 913 թ. մասնակցել է Կոստանդին Դուկասի դավադրությանը և սպանվել[112]: Ա. Կաժդանը Կուրտիկներին տեղադրել է իր գրքի Ա գլխում «Անտարակույս հայ ընտանիքներ» խորագիրը կրող: XI–XII դդ. նա հիշում է բյուզանդական ազնվականության թվում տասներկու Կուրտիկների[113]:

Մեր սույն հետազոտության աղբյուրներում հիշվում են հետևյալ Կուրտիկները. Հովհաննես Դուկաս Կուրտիկես (Ἰωάννης Δούκας ὁ Κουρτίκης): Նա հանդես է գալիս կայսերական (Հովհաննես III Դուկաս Վատացիսի (1222–1254) երեք հրովարտակներում, վեստիարիտես Կոստանդին Կալիդոպուլոսի՝ կայսեր հասցեագրված միևնույն հարցին վերաբերող վեճի առնչությամբ: Առաջին հրովարտակը հրապարակվել է 6737 (1229) թ. փետրվար ամսին և վերաբերում է Զմյուռնիայի ծովափնյա չրջանում գտնվող Աստվածածնի Լեմվոն վանքի Գիրոս կոչվող վայրում կառուցված ձկնորսարանին: Դրա վրա վանքի իրավունքները հաստատված էին կայսերական խրիսովուլով: Հատուկ նչված է, որ վանքին է սլատկա-

---

105 Այն է՝ աղոթել, ծոմ պահել, ողորմություն տալ և այլն:

106 MM, t. I, p. 181-182.

107 T h e o p h a n e s C o n t i n u a t u s, ex recognitione Immanuelis Bekkeri, Bonnae, 1838, p. 383 (ὁ Κουρτίκης ὁ ἐξ 'Αρμενίων) (Օտար աղբյուրները... 15. գ. Ե, 1990, էջ 211, 226: Հմմտ. էջ 159:

108 Ավելի մանրամասն՝ Հ ր. Ա ճ ա ռ յ ա ն. Նչվ. աչխ., հ. Ե, 1962, էջ 223-226:

109 J. M a r k w a r t. Südarmenien und die Tigrisquellen. Wien, 1930, S. 295, A. 1.

110 Սրանք ևս «անտարակույս հայկական ընտանիք են» (К а ж д а н. Армяне, с. 11):

111 Թեոփանեսի Շարունակող, էջ 211:

112 Նույն տեղում, էջ 226:

113 К а ж д а н. Армяне, с. 14-17.

նում Հերմոն գետի հին հոսանքը, Կարպաթիա կոչված վայրը, որում և վանականները կառուցել են ձկնորսարան: Մի այլ մասը շնորհված է «զինվոր» (στρατιώτης) Միքայել Անդեասին, իսկ Հերմոն գետի նոր հոսանքը՝ Կալիգոպուլոսին[114]:

Երկրորդ հրովարտակում ասված է, որ Լեմվոն վանքի վանականները, դիմելով կայսրին, տեղեկացրել էին, որ Հերմոն և այլ գետեր հոսում էին վանքի Գիրոս կոչվող ձկնորսարանով, և քանի որ վեստիարիտես Կոստանդին Կալիգոպուլոսը, որը դնել էր Հերմոն գետի վրա ունեցած իրավունքները, վանքը նրան վարձ էր վճարում: Բայց քանի որ Հերմոն գետը փոխել էր իր հունը և մուտք չէր գործում վանքի ձկնորսարանները, Կալիգոպուլոսը շարունակում էր վանականներից վարձ պահանջել: Կայսրը կարգադրեց իր «ամենացանկալի քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս, տեր Հովհաննես Դուկաս Կուրտիկին (τῷ περιποθητῳ συγγάμβρῳ αὐτῆς, δουκὶ του θεματος των Θρακησιων, κυρ Ἰωάννῃ Δούκα τῳ Κουρτικῃ) պարզելու հարցը և այն արդարորեն լուծելու[115]:

Կայսերական երրորդ հրովարտակը[116] հրապարակված է 6742 (1234) թ.: Այնտեղ նշված է, որ Զմյուռնիայի ափամերձ շրջանում գտնվում է ձկնորսարանի համար հարմար մի վայր: Լեմվոնի Աստվածածնի վանքի վանականները դիմել են կայսեր, որպեսզի թույլ տա իրենց ծախսով ու ջանքերով ձկնորսարան կառուցել: Կայսրը թույլատրում է և հաստատում դրա որևէ մեկին հարկատու չլինելու հանգամանքը: Կայսրը վանքի իրավունքները պաշտպանելու պարտականությունը դնում է պանսեաստ սեաստ պարակիմոմենոս Ալեքսիոս Կարտերոսի վրա: Ձկնորսարանի տեղադրությունը գծելով, կայսրը ցույց է տալիս, որ այն ձգվում է առվակից մինչև Կուրտիկի Լամբիդիոնը (μέχρι της Λαμπιδίου τοῦ Κουρτίκη): Հրովարտակի վերջում կարմիր տառերով ստորագրել էր կայսրը, դրել իր կնիքը, իսկ կատարումը դրվել Դիմիտրիոս Թոռնիկի (δια τοῦ Τορνικη Δημητρίου) վրա, որպես մեսազոնի:

6742 (1234) թվակիր դրությունը վեստիարիտես Կոստանդին Կալիդոպուլոսի և նրա որդի Գեորգիոսի գրած դիմումն է, հասցեագրված «Լեմվոնի ամենասուրբ Աստվածածին կայսերական արգո և ինքնագլուխ (αὐτοδεσπότου) վանքի սրբազնագույն վանահայր տեր Պավլոսին»: Նշվում է վեճի պարագան, հիշվում հարցի քննարկմանը նշանակված «կայսեր ամենացանկալի քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս տեր Հովհաննես Դուկաս Կուրտիկը» և ընդառաջ են դնում վանքի պահանջներին, պարտավորվում ընդունածը խախտելու դեպքում վճարել որպես տուգանք երկու լիար ոսկեդրամ (144 ոսկեդրամ)[117]:

Հետևյալ փաստաթուղթը վերաբերում է ձիթենիների այգու վաճառքին: Վաճառողները՝ Միքայել Ռադինոս, իր կին Աննան և վերջինիս եղբայր Հովհաննեսը Զմյուռնիայի մետրոպոլիտության տարածքում գտնվող իրենց այգին՝ իրենց սեփականությունը հանդիսացող տասներկու ձիթենիներ և այլ ծառեր վաճառում են տեր Թեոդորոս Կուրտիկին: Փաստաթուղթը կազմված է 6745 (1237) թ. հունիսին և ստորագրված չորս վկաների և Զմյուռնիայի մետրոպոլիտության քահանա և նոմիկոս Լաոդիկինոսի կողմից[118]:

Հովհաննես III Դուկասի 6742 (1234) թ. մարտի կարգադրությամբ նա Զմյուռնիայի Լեմվոն Աստվածածնի վանքին է նվիրաբերում վեց լուծ հող (γῆν ἓξ ζευγαρίων) և կարգադրում, որ այն տրվի «իմ թագավորության ամենացանկալի քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս Հովհաննես Դուկաս Կուրտիկի միջոցավ»[119]:

---

114 MM, t. IV, p. 241-242.
115 MM, t. IV, p. 239-240.
116 MM, t. IV, p. 240-241.
117 MM, t. IV, p. 242-244. Թրակեսիոն բանակաթեմը չշփոթել Թրակիայի հետ. Այն գտնվում էր փոքրասիական թերակղզու արևմուտքում, նրա տարածքում էին Լյուդիան և արևմտյան Փռյուգիայի մի մասը, և նշանավոր քաղաքներ Փիլադելփիան, Լավոդիկիան, Սարդիսը, Ապոլոնիասը, Հերակլիան, Սեբաստուպոլիսը և այլ: Զորանամակում նրա զորավարը գտնվում էր երրորդ շարքում:
118 MM, t. IV, p. 89-91.
119 MM, t. IV, p. 146.

*Նույն տարվա մայիս ամսին Լեմվոնի Աստվածածնի վանքի վանահայր տեր Պավլոսը բերեց կայսերական որոշումը, ինչպես և «մեր հզոր և սուրբ տիրոջ, կայսեր հարազատ եղբայր ամենացանկալի* Կոմնենոս տեր Դիմիտրիոս Թոռնիկի» *(*του περιποθήτου αὐταδέλφου τοῦ κραταιοῦ καὶ ἁγίου ἡμων αὐθέντου καὶ βασιλέως, τοῦ πανευγενεστάτου Κομνηνοῦ κυροῦ Δημητρίου τοῦ Τορνίκη*) գրությունը՝ իր ստորագրությունը կրող*[120]*:*

*6744 (1236) թ. ապրիլի փաստաթուղթը Հովհաննես Ռավդոկանակակիսի, նրա կնոջ Մարիայի և զոքանչի կողմից Զմյուռնիայի Լեմվոն Աստվածածնի վանքին հողակտոր վաճառելու մասին է: Հողակտորը վեց ոսկեդրամով վաճառվում է վանքի վանահայր Պավլոսին: Փաստաթղթի սկզբում տրվում է վաճառողների կողմից իրենց կալվածքները ձեռք բերելու նախապատմությունը, ասվում, որ գնման գործարքները հաստատելու ակտը կատարել է «Թրակեսիոն բանակաթեմի այն ժամանակվա դքսի պաշտոնը վարող տեր Հովհաննես* Դուկաս Կուրտիկը»*: Հողի վաճառքը տեղի է ունեցել «մեր հզոր և սուրբ տիրոջ և կայսեր ամենացանկալի հարազատ եղբայր* Կոմնենոս աեր Դիմիտրիոս Թոռնիկի ներկայությանը»[121]:

*Զմյուռնիայի շրջանի Լեմվոն Աստվածածնի վանքին է վերաբերում և XIII դ. կեսերին վերաբերող մի անթվակիր կայսերական հրամանագիր, հասցեագրված «իմ թագավորության ամենացանկալի քենակալ, Թրակեսիոն բանակաթեմի դուքս տեր Հովհաննես Դուկաս* Կուրտիկին»[122]:

*Կեֆալոնիա եպիսկոպոսության իրավասության տակ գտնվող կալվածքների ցուցակում, կազմված 1262 թ. կոմս Ռիկարդո Օրսինիի կողմից, հիշվում է* Լևոն Կուրդակի որդի Միքայելից (ἀπὸ Μιχαὴλ υἱοῦ τοῦ Λέοντος τοῦ Κουρδάκη) *գնված կալվածքի մասին: Բացառված չէ, որ «Կուրգակի»-ն աղավաղումն է «Կուրտիկի»*[123]*:*

## 13. ՃԱՆՃ - ΤΖΑΝΤΖΗΣ

*Հր. Աճառյանի Անձնանունների բառարանում նման անձնանուն չի նշված: Մեր դեպքում այն արդեն տոհմանուն է դարձած: Այգ անվան մեջ հավանաբար սովորական ճանճ իմաստը չի թաքնված, այլ մեղու*[124]*, որի հունարեն արականը Մելիսսոս (*Μέλισσος*) է, իսկ իգականը՝ Մելիսսա (*Μέλισσα*): Սրա առնչությամբ կարելի է մի վարկած առաջարկել: Դեռևս VIII դ. հայտնի է* Մելիսսենոսների *բյուզանդական ազնվականական ընտանիքը: Առաջին հայտնի ներկայացուցիչը* Միքայել Մելիսսենոսն *է, որին Կոստանդին V կայսրը նշանակեց փոքրասիական խոշորագույն բանակաթեմի՝ Անատոլիկոնի զորավար*[125]*: Պ. Խարանիսը Վուրցիսների ազնվականական ընտանիքը համարում է անտարակույս հայկական*[126]*: Իսկ Ա. Կաժդանը գտնում է, որ Վուրցիսներին ազգական էին Մելիսսենոսները*[127]*, և խոստովանում, որ իր թվարկած ընտանիքների թվում հաշվի չեն առնված այն ընտանիքները, որոնք իրենց ծագումով առնչվում են Միջագետքի հետ (Մելիսսենոսներ, Արվանդյաններ (Երվանդունինե՞ր – Հ. Բ.), անգամ Անգելոսներ), «որոնք ապրում էին մեծաթիվ հայկական բնակչությամբ միջավայրում և անտարակույս, գտնվում էին հայկական ընտանիքների հետ ազգականության և խնամիության մեջ»*[128]*:*

---

[120] MM, t. IV, p. 147, 149.
[121] MM, t. IV, p. 192-194.
[122] MM, t. IV, p. 214.
[123] MM, t. V, p. 61.
[124] *Տե՛ս էդ. Ա ղ ա յ ա ն. Արդի հայերենի բացատրական բառարան, հ. Բ, Երևան, 1976, էջ 936:*
[125] *Օտար աղբյուրները ... հ. 13. Թեոփանես Խոստովանող, 1983, էջ 152:*
[126] P. C h a r a n i s. The Armenians, p. 45 (*հայ. թարգմ.՝ էջ 94*):
[127] К а ж д а н. Армяне, с. 88.
[128] *Նույն տեղում, էջ* 146:

Արդ, Մելիսսենոս տոհմանունը, որ բխում է հենց Մելիսսա (մեղու) բառից, հայերեն «Ճանճի» հունարեն թարգմանությունը չէ՞: Թերևս Մելիտնե՞րը (Μελίτοι), որոնց Ռ.Գիյյանը հայ է համարում[129]:

«Ճանճ» ընտանիքը հայտնի է դեռ IX դ.: Միքայել I կայսեր օրոք (811-813) հիշվում է այդ անվամբ Մակեդոնիայի զորավար[130]: Ն.Ադոնցը անունը հայկական է համարում և փորձում նույնացնել նշանավոր Ստիլիանոս Զաուցեսի մականվան հետ[131], բայց հավանական չէ: XI–XII դդ. բյուզանդական ազնվականության շրջանում գործած «Ճանճերի» մասին տե՛ս Ա.Կաժդանի մենագրության մեջ[132]:

6596 (1088) թ. օգոստոս ամսի փաստաթղթում հիշվում է նույն տարվա հուլիս ամսին ամբողջ Պատմոս կղզին Հովհան Աստվածաբանի վանքի վանահայր Խրիստոդուլոս Լատրենոսի իրավասությանը հանձնելու մասին, վանքին պատկանող Կո կղզու ամբողջ անշարժ գույքը պետությանը հանձնելու պայմանով: Հանձնարարությունը տրվեց Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիա տաճարի սարկավագ և պրոտոսինկելոս Գևորգ Գրանատոսին «Կիկլադյան կղզիների կրիտես և անագրաֆևս մագիստրոս Նիկոլայոս Ճանճի միջոցով» (παρὰ Νικολάου μαγίστρου, κριτου καὶ αναγραφεως των Κυκλαδων νήσων, του Τζάντζη): Ակտի տակ հիշյալ Նիկոլայոս Ճանճը ստորագրել է այսպես. «Սակելլարիոնի սեկրետի կայսերական նոտար, Կիկլադյան կղզիների կրիտես և անագրաֆևս Նիկոլայոս Ճանճ» (Νικολαος, βασιλικος νοταριος του σεκρέτου του σακελλαριου, κριτης καὶ αναγραφευς των Κυκλαδων νησων, ο Τζαντζης): Փաստաթուղթն ուներ և վերջինիս արճճե կնիքը «Տէր օգնեա՛ սակելլարիոնի կայսերական նոտար, Կիկլադյան կղզիների կրիտես և անագրաֆևս - Նիկոլայոս Ճանճին» (κύριε βοήθει Νικολάῳ, βασιλικω νοταρίῳ τοῦ σακελλαριου, κριτῆ και αναγραφεῖ των Κυκλαδων νησων, τω Τζαντζη)[133]:

Նիկոլայոս Ճանճի մասին մանրամասնություններ տե՛ս Էրա Վրանուսիի գրքում[134]:

## 14. ՄԱԽԻՏԱՐ - ՄԽԻԹԱՐ - ΜΑΧΗΤΑΡΙΟΣ - ΜΑΧΗΤΑΡΗΣ

Ըստ Հր. Աճառյանի անունը հիշատակված է VI դ.[135]: Նա այն գլտե որպես անձնանուն (և ոչ տոհմանուն), թեև Կ. Տեր-Սահակյանի գրքում, որի վրա է նա հենվում, խնդրո առարկա անձնավորությունը կոչված է Մխիթար Վասիլ [136](ճիշտը պիտի լինի՝ Վասիլ Մխիթար, ուր Մխիթարը ազգանուն է): Հայոց մեջ շատ տարածված անուն է (Հր.Աճառյանն այդ անունով հայկական աղբյուրներում հիշված 204 հոգու է նշում, այդ թվում և որպես վերջինը՝ Մխիթար Սեբաստացուն, Մխիթարյան միաբանության հիմնադրին):

Մխիթար անունը Բյուզանդիայում վերածվել էր տոհմանվան: Հայագետի համար միանգամայն պարզ է, որ բյուզանդական աղբյուրներում հանդիպող Մախիտար տոհմանունը հայերեն Մխիթարի հունարեն տառադարձությունն է[137]: Հայերենի գաղտնավանկ «ը»-ն, որ արտասանվում է, բայց չի գրվում, հունարենում գոյություն չունենալու պատճառով այն փոխարինվում է որևէ ձայնավորով: Զըմըշկիկը դառնում է Ցիմիսկիս, Վըխկացին Վիխկացի և այլն: Ահա Մ(ը)խիթարն էլ դարձել է Մախիտար: Ամբողջ հարցն այն է,

[129] R. G u i l l a n d. Les Logothetes.– "Revue des Etudes Byzantines". T. 29, 1971, p. 59.
[130] Georgii Monachi Vitae recentiorum imperatorum.– In: Theophanes Continuatus, p. 819.
[131] N. A d o n t z. L age et l'origine de l'empereur Basile I (867-886).– In: EAB, p. 54 sqq.
[132] К а ж д а н. Армяне, с. 82-83.
[133] MM, t. VI, p. 55-57. Հիշյալ փաստաթղթի Մ. Վ. Լևչենկոյի ռուսերեն կրճատ թարգմանությունը տե՛ս Сборник документов по социально-экономической истории Византии, М. 1951, с. 190-192.
[134] Βυζαντινὰ ἔγγραφα τῆς Μονῆς Πάτμου, Α΄ Αὐτοκρατορικά, σελ. 65.
[135] Հր. Ա ճ ա ռ յ ա ն. Նշվ. աշխ., հ. Գ, 1946, էջ 366:
[136] Կ. Տ ե ր - Ս ա հ ա կ յ ա ն. Հայ կայսերք Բյուզանդիոնի. հ. Բ, էջ 577:
[137] N.A d o n t z. Notes Arméno-Byzantines I. Les sceaux des Makhitar.– In: EAB, p. 137-141.

*որ գոյություն ունի հունարեն բառ «մախի» (*μάχη*-մարտ), դրանից առաջացած «մախիտիս» (*μαχητής *- մարտիկ)։ Բյուզանդագետները, հայերենին անտեղյակ, հունարեն «մախի» - «մախիտիս»-ի հետ են կապում հայկական Մխիթար անունը։ Դրանից ելնելով Ա. Կաժդանը տվյալ տոհմանունը զետեղել է իր գրքի Գ գլխում «Ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներ»[138], թեև, նախքան հրատարակությունը, տողերիս հեղինակը բազմիցս նախազգուշացրել էր իրեն։ Գրքի լույս տեսնելուց ընդամենը 15 տարի անց երկու ամերիկացի բյուզանդագետներ* Dumbarton Oaks *-ի բյուզանդական շուրջ 17.000 արճճե կնիքների հավաքածուում հայտնաբերեցին և հրատարակեցին X դ. վերջ – XI դ. սկիզբ թվարկված մի կնիք, որի մեկ երեսին հունարեն գրված էր* Μαχητάριος *(Մախիտարիոս), իսկ հակառակ երեսին հայերեն՝ Մխիթար*[139]*։*

*Մեր ուսումնասիրած աղբյուրում այդ տոհմանվամբ առաջինը հանդիպում է Աննա Դուկենա Դալասսենայի*[140]*, Ալեքսիոս I Կոմնենոս կայսեր (1081-1118) մոր «Տիրուհու սիգիլիոնում», կազմված 6595 (1087) թ. հունիսի 15-ին, որում հիշվում է իր որդու, Ալեքսիոս I Կոմնենոսի խրիսովուլը, գրված նույն տարվա մայիսին, որի համաձայն, վանական Խրիստոդուլոսին և նրա կողմից Կո կղզում հիմնադրված Աստվածածնի վանքին նվիրաբերվում են ամբողջ Լիպսո կղզյակը, Լերոս կղզու Պարթենիոն և Տեմենիա պրոաստիոնները, Պանտելիոն բերդի կեսն ու դրանց եկամուտները*[141]*։ Աննա Դալասսենան կարգադրում է կայսերական նոտարին, որպեսզի Միրելեոնի սեկրետում*[142] *գրանցի իր հոր վերոհիշյալ խրիսովուլը, իսկ հիշյալ սեկրետի յոթ պաշտոնավոր անձանց կողմից ստորագրված պատճենը տրվի վանական Խրիստոդուլոսին։ Հաստատված է «վեստարխ Միքայել Մախիտարի» կողմից (*διὰ γραμμάτων τοῦ βεσταρχου Μιχαὴλ τοῦ Μαχηταρη*)*[143]*։*

*Նշենք, որ Սանկտ Պետերբուրգի Էրմիտաժում պահվում է հիշյալ Միքայել Մախիտարի արճճե կնիքը, որ հրատարակվել է Վ. Ս. Շանդրովսկայայի կողմից*[144]*։*

*1362 թ. հոգևոր խորհրդի որոշման մեջ խոսվում է եկեղեցում առկա անախորժությունները վերացնելու՝ Կոստանդնուպոլսի Տիեզերական պատրիարքի և կայսեր ձեռք առած միջոցների մասին։ Քաղկեդոնի մետրոպոլիտը և Սալոնիկի մետրոպոլիտության թեկնածու հիերոմոնախ տեր Նիլոս Կավասիլասը Կոստանդնուպոլսի պատրիարքին ուղղված դրությամբ բողոքում էին եկեղեցում կատարվող եռամուսնությունների, քառամուսնությունների և այդ տեսակի այլ անօրինությունների դեմ։ Կայսեր հրամանով գումարվում է հոգևոր*

---

[138] К а ж д а н. Армяне, с. 100-103.

[139] C o u l i e B e r n a r d and N e s b i t t J o h n. A Bilingual Rarity in the Dumbarton Oaks Collection of Lead Seals. A Greek - Armenian Bulle of the Later 10th / Early – 11th Centuries. Dumbarton Oaks Papers, N 43, 1989, p. 121-123.

[140] *Դալասսենների հայկական ծագմամբ բյուզանդական ազնվականական ընտանիքի մասին տե՛ս* N. A d o n t z. Notes ... V. Les Dalassenes. In: EAB, p. 163-177. *Ա. Կաժդանը Դալասսենների հայկական ծագումը հնարավոր է համարում, «բայց ոչ ավելին».* К а ж д а н. Армяне, с. 93. *Նրանց մասին նույն տեղում, էջ* 92-97. *Տե՛ս նաև* C h a r a n i s. The Armenians, p. 45 sqq . *(հայ. թարգմ.՝ էջ 95)*։

[141] *Ալեքսիոս I Կոմնենոսի հիշյալ 6595 (1087) թ. մայիսի խրիսովուլը պահպանված է և մանրամասն ուսումնասիրված։ Տե՛ս* Βυζαντινά ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου, σελ. 40-54.

[142] *Այս սեկրետը հիշյալ անվանումն ստացել է X դ. և կալվածքներ ուներ Թրակեսիոն բանակաթեմում և Էգեական ծովի կղզիներում։ Սեկրետը Աննա Դալասսենային նվիրեց իր որդին՝ Ալեքսիոս I Կոմնենոսը. Տե՛ս* N. O i k o n o m i d è s. L' evolution de l' organisation administrative de l'Empire Byzantin au XI s. Travaux et Memoires 6 (1976), p. 139.

[143] MM, t. VI, p. 32-33. *Քննական-դիտական վերահրատարակությունը տե՛ս* Βυζαντινὰ ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου, σελ. *331-335.*

[144] В. С. Ш а н д р о в с к а я. Печати представителей армянского рода Махитариев. – ИФЖ, 2003, №1, с. 153-154: *Երկու այլ արճճե կնիքներ հրատարակել է Վ. Լորանը.* V. L a u r e n t. Le Corpus de sceaux de l' Empire Byzantin. T. II L Administration Centrale, Paris, 1981, N 1026, 1027.

*խորհրդի նիստ, հրավիրվում են Երուսաղեմի պատրիարքը և տվյալ պահին մայրաքաղաք ժամանած եպիսկոպոսները: Հերակլիայի, Կյուզիկոսի, Պոնտոհերակլիայի, Բյուզեի (Թրակիա) եպիսկոպոսները հանդես եկան ի պաշտպանություն քահանա Մախիտարի անձի նկատմամբ հոգևոր խորհրդի կողմից ընդունված ներման վճռի, Վրիսայի եպիսկոպոսը միացավ նախորդներին, բայց իր կողմից ավելացրեց, թե Մախիտարը այսուհետև չպետք է ժամասացություն կատարի Ս. Սոֆիայի հռչակավոր տաճարում և չկատարի ոչ մի եկեղեցական խորհուրդ, հիշեցնելով, որ նախորդ եպիսկոպոսները համաձայն էին դրան: Այնուհետև ելույթ ունեցողները՝ Խրիստիանուպոլսի, Կելցենեի (Եկեղյաց գավառ), Ռոսիոսի, Մեդիայի եպիսկոպոսները Մախիտարի հարցում միացան վերոհիշյալներին, բացառությամբ Սուղդեայի եպիսկոպոսի: Նույն կարծիքը հայտնեց Երուսաղեմի պատրիարքը, որը պահանջեց, որ քահանա Մախիտարը հենց հոգևոր խորհրդում մեղայականով հանդես գա, ներողություն խնդրի, ինչ որ Մախիտարն արեց*[145]*:*

*Պարզ է, որ Ս. Սոֆիայի տաճարի քահանա* (ἱερεύς) *Մախիտարը անօրինական եռամուսնություններ և քառամուսնություններ էր կատարում, բայց Տիեզերական եկեղեցու մտահոգությունը քահանա Մախիտարի անձը չէր, այլ ընդհանրապես նման անօրինականությունների* (τριγαμίαι, τετραγαμίαι καὶ ἀθεμιτογαμίαι) *առաջն առնելը:*

*6891 (1383) թ. հունվարի 20-ի փաստաթուղթը հոգևոր խորհրդի որոշում է: Նիստում նախագահում էր Կոստանդնուպոլսի Տիեզերական պատրիարքը (Նիլոս - 1379-1388): Մասնակցում էին եպիսկոպոսներ՝ Հունգարո-Վալախիայի Անթիմոսը, Նիկոմեդիայի արքեպիսկոպոսի տեղապահը, Լավոդիկիայի, Իկոնիոնի, Գոթիայի, Մյուռոնի, Խերսոնի եպիսկոպոսները: Ներկա էին նաև ամենապատիվ էքսոկատակիլոսները, ինչպես և ամենաաստվածասեր քաղաքացիական պաշտոնյաներ: Մեծ խարտոֆիլաքսը հանդես եկավ ավագ կրիտես Մախիտարի* (ἐπὶ των κρίσεων πρεσβυτέρου του Μαχητάρη) *դեմ, որը ևս ժողովում ներկա էր: Հարցը Մախիտարի ազգական, ոմն ատաղձագործ Միքայելի որդու ամուսնության համար Մախիտարի մեծ խարտոֆիլաքսից թույլտվության բուլլա ստանալու մասին էր: Բուլլան ստանալով, նա Միքայելի որդուն քահանա Պարադիոսի միջոցով ամուսնացնում է մի այլ կնոջ՝ Գեորգիոս Վուցաս քահանայի մայրապետ դստեր հետ: Ժողովի միաձայն որոշմամբ ու պատրիարքի հաստատմամբ, ավագ կրիտես Մախիտարին վտարում են՝ որպես անօրեն ու ամբարիշտ արարք կատարած*[146]*:*

## 15. ՄԱՆԴԱԿ - ΜΑΝΔΑΚΙΟΣ

*Անունը, որպես այդպիսին, հայկական աղբյուրներում չի հիշվում, բայց հուշում է հին Հայաստանի Մանդակունի նախարարական ընտանիքը: Առավել ևս հետաքրքիր է նշել, որ Տրդատ III-ի օրոք հայոց զորքերի սպարապետությունը հանձնարարվել էր Արտավազդ Մանդակունուն*[147]*: Բազմիցս հիշված Կեֆալոնիա, Զակինթոս և Իթակե կղզիների կոմս Ռիկարդո Օրսինիի՝ Կեֆալոնիայի եպիսկոպոսության կալվածքների ցանկում (1262 թ.) Էպիրոսի՝ Ադրիատիկ ծովի նշանավոր նավահանգիստ, 1258 թ. Սիկիլիայի թագավոր Մանֆրեդի կողմից գրավված Ավլոն քաղաքի թեմում նշվում են Արտավազդ Մանդակի կալվածքները*[148]*: Սա անվան և տոհմանվան պատահական զուգադիպությու՞ն է, նամանավանդ, որ հիշյալ փաստաթղթերում մեկ անգամ տոհմանունը հանդիպում է հոգնակի թվով «Մանդակների կալվածքը»* (χωράφιον τῶν Μανδακίδων *- Մանդակունիների՞)*[149]*: Դժվար թե XIII դ. Մանգակունիների հետնորդներ հանդիպեին: Բայց բոլոր դեպքերում թող սա համարվի փաստի պարզ արձանագրում:*

---

[145] MM, t. I, p. 416-423.
[146] MM, t. II, p. 48-50.
[147] *Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, էջ 215, 217:*
[148] MM, t. V, pp. 19- 23, 26, 30, 42, 48,
[149] MM, t. V, p. 49.

*Մանդակ անձնանունը 1262 թ. վերոհիշյալ փաստաթղթում հանդիպում է որպես տոհմանուն: Նշեցինք Արտավազդ Մանդակին (տե՛ս № 5): Էպիրոսի Ավլոնում, Կեֆալոնիայի եպիսկոպոսությանը պատկանող կալվածքների թվում հիշվում է և Նիկետաս Մանդակի կալվածքը*[150]*, իսկ «Այգիներ» բաժնում Ս. Եզրասի վանքի այգիներից մեկը գտնվում էր Թեոդորոս Մանդակի այգու մոտ*[151]*:*

*Ավլոնի թեմում հիշվում է Լևոն Մանդակի տունը* (οικία Λέοντος τοῦ Μανδακιου)[152]: *Առանձին, առանց անձնանվան, նույն տոհմանունն է նշանակում: Կեֆալոնիայի եպիսկոպոսության տարբեր թեմերում հաճախ է դա հանդիպում: Ունենք «Մանդակի կալվածք»* (χωραφιον τοῦ Μανδακίου)[153], *«Մանդակի արմակիոն»* (αρμακιον τοῦ Μανδακίου)[154], *«Մանդակի գյուղ»* (χωρίον του Μανδακίου)[155], *«Մանդակի այդի»* (αμπελιον τοῦ Μανδακιου)[156], *«Մանդակի հողաշերտ»* (λαχίδιον του Μανδακίου)[157]:

## 16. ՄԵՍՐՈՊՆԵ°Ր - Μ Ε Σ Ω Π Ρ Ω Τ Α Ι

*Հոնիական ծովի Կեֆալոնիա կղզու հարավարևելյան մասում գտնվող Ատրոս լեռան վրա կառուցված Աստվածածնի վանքի կալվածքների թվում, Կեֆալոնիա եպիսկոպոսության ենթակա կայքի կոմս Ռիկարդո Օրսինիի կազմած ցանկում (1262 թ.) հիշվում է «Մեսոպրոտներ» կալվածքը երկու մոդ տարածությամբ*[158]*: Հնարավոր է, որ այդ անվան մեջ աղավաղված ձևով թաքնված է «Մեսրոպ» անունը. տեղի է ունեցել հունարեն* Π *և* Ρ *(Պ և Ր) տառերի մետաթեզիս` հետուառաջություն: Ուղղելու դեպքում կստանանք* Μεσρωπωτ *(Մեսրոպոտ): Ինչպես հայտնի է, հունական աղբյուրներում հայկական այդ անունը աղավաղված է հանդես գալիս: Այսպես օրինակ, Թեոդորոս Մոպսուեստացու* Μαστ(ρ)ούβιος*-ը՝ Մաստ(ր)ուբիոս*[159]*: Մեր ենթադրության օգտին է վկայում և այն փաստը, որ նախորդ Սրբոց Անարծաթից վանքի կալվածքների շարքում հիշվում են «Հայոց կալվածքը»* (χωραφιον τῶν᾽Αρμενάδων), *«Հայոց վայրը»* (θεσις τῶν᾽Αρμενάδων), *«Հայոց աղբավայրը»* (ρυποτοπος τῶν᾽Αρμενάδων), *«Հայերից ցած»* (κάτωθεν τω᾽Αρμεναδων), *«Հայերի շրջանը»* (περιοχη τῶν᾽Αρμενάδων)*: Նույն տեղում հիշվում են և հայկական անուններով անձնավորություններ, ինչպես օրինակ Մենիատես Արավանտինոս* (Αραβαντηνος Μηνιατης), *«Մանդակի կալված»* (χωραφιον τοῦ Μανδακιου), *«Նիկեփոր Մոնաստրայի կալված»*[160] *(տե՛ս № 17):*

*Տվյալ խնդրի առնչությամբ պետք նշել մի հետաքրքիր փաստ ևս: Կեֆալոնիայի եպիսկոպոսության Կրանիա վանքի կալվածքների թվում հիշվում է «Նիկոլայոս Տերոնատոսի» կալվածքը, որ, ամենայն հավանականությամբ,* Ταρωνιτης*-ի՝ Տարոնացու, բյուզանդական ազնվականական ընտանիքի շառավիղներից մեկին էր պատկանում: Մանդակին պատկանող չորս մոդ տարածությամբ մի կալվածք էլ այս վանքի սեփականությունն էր: Բայց այստեղ հիշվում է և Ապլոռավդենայի այգի* (ἀμπέλιον ἡ᾽Απλοράβδενα)[161]*: Ապլոռավդե-*

---

[150] MM, t. V, p. 31.
[151] MM, t. V, p. 41.
[152] MM, t. V, p. 25.
[153] MM, t. V, p. 17-20, 22-24, 26, 38, 42, 47-48, 57, 62, 65.
[154] MM, t. V, p. 20.
[155] MM, t. V, p. 22.
[156] MM, t. V, p. 29.
[157] MM, t. V, p. 53.
[158] MM, t. II, p. 63.
[159] *Տե՛ս Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Թեոդորոս Մոպսուեստացու* ΜΑΣΤΟΥΒΙΟΣ*-ի և բյուզանդական «Մաշտոցյան» տոհմի մասին (X դար).– «Լրաբեր հասարակական գիտությունների», 1984, № 7, էջ 74-76, Հայ-բյուզանդական հետազոտություններ. հ. Ա, էջ 505-507):*
[160] MM, t. V, p. 56-57.
[161] MM, t. V, p. 54-55.

*նան Ասլլոռավդես անվան իգականն է: Այդ անունով անձնավորություն հանդիպում է բյուզանդական «Դիգենիս Ակրիտաս» էպոսում, որ մենք նույնացրել ենք Մանազկերտի արաբ ամիրա Աբու - լ - Վարդի հետ*[162]:

*Կոստանդնուպոլսի պատրիարքարանի XIII դ. անթվակիր մի փաստաթղթում հիշվում է ոմն Միքայել Ապլոռավդես*[163]*: Նրա քրիստոնեական անունը՝ Միքայել, և այլ Ապլոռավդեսների առկայությունը Հոնիական ծովի կղզիներից մեկում, թույլ չեն տալիս ենթադրել, թե նրանք արաբ են: Քանի որ Աբու-լ-Վարդ անունով IX դարում հայտնի են Մանազկերտում որպես Կայսիկ ցեղի ամիրաներ, ապա բացառված չէ, որ հայոց շրջանում այդ արաբական անունը տարածում ունենար, ինչպես արաբական բազում այլ անուններ:*

## 17. ՄՈՆԱՍՏԻՐԻՈՏԵՍ - ΜΟΝΑΣΤΗΡΙΩΤΗΣ

*Սույն ազգանունը մեզ հայտնի էր Անիի պեղումներից հայտնաբերված 1059 թվակիր Հայաստանի և Իբերիայի կատեպան, վեստարխ Հովհաննես Մոնաստերիոտեսի հունարեն արձանագրությամբ (*ΙΩΑΝΝΟΥ ΒΕΣΤΑΡΧΟΥ ΤΟΥ ΚΑΤΕΠΑΝΩ ΑΡΜΕΝΙΑΣ ΚΑΙ ΙΒΗΡΙΑΣ ΤΟΥ *ΜΟΝΑΣΤΗΡΙΩΤΟΥ): Մեր փաստաթղթերում առաջին անգամ հիշատակվում է Պատմոս կղզու վանքում պահվող Ալեքսիոս I Կոմնենոս կայսեր 1088 թ. խրիսովուլ գրությամբ (արտագրված 1171 թ.): Գրության իսկությունը բնագրի հետ համեմատելով, հաստատել և ստորագրել է «վելոնի կրիտես և գենիկոս Լեոն Մոնաստերիոտեսը» (*ὁ κριτης του βήλου και γενικος Λέων ὁ Μοναστηριώτης*)*[164]*: Նա այդ պաշտոնը վարել է 1166-ից մինչև 1187 թ.: 1169-ին նա հաստատել է և Ս. Մամասի վանքի Կանոնագրությունը*[165]*: Բյուզանդական պատմիչ Նիկետաս Խոնիատեսի տվյալների համաձայն, նա մեզ հայտնի Դիմիտրիոս Թոռնիկի հետ (տե՛ս N 7) հետ թշնամանալով ընդդեմ Անդրոնիկոս I կայսեր, հազիվ փրկվեց դազազած ամբոխի կողմից սրախողխող արվելուց*[166]:

*Կեֆալոնիայի եպիսկոպոսության Սրբոց Անարծաթից վանքի շրջանում հիշվում է «Հայոց վայր» (*θέσις τῶν ᾿Αρμενάδων*): Ահա այդ վանքի շրջանում հիշվում են կալվածքներ, այդ թվում Մանդակին վերաբերող*[167]*, և Նիկեփոր Մոնաստրային (*Μοναστρα*): Շատ հնարավոր է, որ այս ազգանվան տակ ենթադրվում է մեզ հայտնի Մոնաստերիոտեսը*[168]*: Այստեղ է հիշվում և Մենիատես Արավանաինոսի մի կալվածքը*[169]*: Իսկ Ատրոսի Աստվածածնի վանքի կալվածքների թվում հիշվում է «Մեսոպլոտներ»*[170] *կալվածքը, ինչպես նաև վանքին խաղողի այգի նվիրաբերած ոմն Անաստասիա Մոնաստրա*[171] *(*᾿Αναστασία τοῦ Μοναστρα*), որի ազգանվան տակ էլ, հավանաբար, թաքնված է «Մոնաստերիոտեսը»:*

*«Անատոլիկոն բանակաթեմի դոմեստիկոս» Մանուիլ սևաստոս Զգուրոպուլոսի 6801 (1293) թ. գրության մեջ խոսք է լինում Զմյուռնիայի Լեմվոն վանքի վանականների բողոքի մասին՝ ընդդեմ իրենց իրավունքները ոտնահարող հարևանների: Դոմեստիկոսը զբաղված լինելով, հարցը քննության ենթարկելու համար ուղարկում է ծառայողների մի ամ-*

---

[162] Р. М. Б а р т и к я н. Заметки о византийском эпосе о Дигенисе Акрите. — "Византийский Временник", т. XXV, 1964, с. 148-151 (*Հայ-բյուզանդական հետազոտություններ. հ. Բ, էջ 99–102*):

[163] MM, t. II, p. 472-473.

[164] MM, t. VI, p. 53. *Գիտական-քննական հրատարակությունը՝* Βυζαντινὰ ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου, σελ. 69.

[165] А. А. Д м и т р и е в с к и й. Описание литургических рукописей, хранящихся в библиотеках православного Востока. Т. 1 Τυπικά, с. 715.

[166] Nicetae Chonitae Historia…, p. 265.

[167] *Մանդակի մասին տե՛ս №15:*

[168] MM, t. V, p. 57.

[169] *Նույն տեղում:.*

[170] *Մեսոպոտի մասին տե՛ս №16:*

[171] MM, t. IV, p. 229-230.

*բողջ խումբ: Խումբը գլխավորում է դոմեստիկոսի փեսա Կրիտոպուլոսը, որն այդ ընթացքում նշանակվելով Քիոս կղզու կառավարիչ, չի կարողանում անձամբ լինել տեղում: Դրա վրա Անատոլիկոն բանակաթեմի դոմեստիկոս Մանուիլ Զգուրոպուլոսը նրա փոխարեն ուղարկում է «իմ ամենափառավորյալ ընկեր, կայսերական վեստիարիտես տեր Լևոն Մոնաստերիոտեսին»*[172]:

*6857 (1348) թ. հոկտեմբեր-դեկտեմբերի փաստաթուղթը ժառանգության հարցի է վերաբերում: Գործը վարողը Կյուզիկոսի մետրոպոլիտն է, բայց սեփականությունը գտնվում էր նաև Կոստանդնուպոլսում, այդ թվում տներ և այգիներ: Վկաների թվում հիշվում են «իմ հզորագույն և սուրբ կայսեր (Հովհաննես V Պալեոլոգոս - 1341-1391) ազգական Մոնաստերիոտեսը և վերջինիս դստեր ամուսին Սեբաստացին* (οἱ οἰκεῖοι ... ὁ τε Μοναστηριώτης καὶ ὁ ἐπὶ θυγατρὶ γαμβρος αὐτοῦ, ὁ Σεβαστειανος)[173]:

*6891 (1383) թ. մարտի սիգիլը, ստորագրված Կոստանդնուպոլսի պատրիարք Նիլոսի կողմից (1379-1388), վերաբերում է Ս. Աթանասի վանքերի կալվածքներին: Սիգիլում ցույց է տրված, որ վանքերի խաղողի այգիներ գտնվում էին Ոսկե Դռան շրջանում, ասել է՝ Կոստանդնուպոլսում: Վեճը Ս. Աթանասի վանքերի կալվածքներն ու ունեցվածքը բաժանելուն է վերաբերում տղամարդկանց և կանանց վանքերի միջև: Անապնոագա կոչված խաղողի այգին և կալվածքները բաժանվում են երկուսի՝ տղամարդիկ ստանում են Ս. Թեոդորոսի կալվածքները, իսկ կանայք՝ Մոնաստերիոտեսինները: Վերջինների արժեքը 240 ոսկեդրամ էր, իսկ Ս. Թեոդորոսի կալվածքներինը՝ 264 ոսկեդրամ*[174]:

*Արդ, ինչո՞ւ Մոնաստերիոտներին հայազգի ենք համարում: Ազգանունը բխում է հունարեն մոնաստերիոն* (μοναστηριον) *բառից, որ «վանք» է նշանակում: Սակայն եթե չի նշված, թե տվյալ անձնավորությունը ո՞ր վանքի շրջանից է, ապա ազգանունը կախված է լինում օդի մեջ: Գտնում ենք, որ դրա մեջ թաքնված է «Վան» քաղաքի անունը, իսկ Մոնաստերիոտեսը Վանեցիի հունարեն թարգմանությունն է: Հայտնի է և մի այլ «Վանեցի» (Փիլիպուպոլսի Գրիգոր Բակուրյանի հիմնադրած վանքի վանահայրը (1083), որ հանդես է գալիս հենց ի՛ր հայկական մականվամբ՝ Վանինոս* (Βανινός) *- Վանեցի*[175]:

## 18. ՉՄՇԿԻԿ - ΤΖΙΜΙΣΧΗΣ - ΣΥΜΙΣΚΗΣ

*Հր. Աճառյանը Զմշկիկ անուն չի հիշում: Գիտե Հովհաննես Զմշկիկ կայսրին (Զմշկիկն ազգանուն է):*

*6597 (1089) թ. ապրիլի փաստաթուղթը սկզբից պակասավոր է, բայց պահպանվածից հայտնի է, որ դա Ալեքսիոս I Կոմնենոս կայսրի (1081-1118) մի խրիսովուլ է, որով նա վերացրեց Լդեական ծովի Պատմոս կղզու վանքերից հարկերի գանձումը: Գրությունը հասցեագրված է մեծ խարտուլար մագիստրոս Խրիստոֆորոս Կոպսինոսին, Կո կղզու անագրաֆևսին «մեր սուրբ կայսեր մարդուն* (ἄνθρωπος)[176]: *Միաժամանակ կարգադրում է նրան նախորդ տարվանից Պատմոս կղզում ծառայող տասնմեկ «զինվորներին» տեղափոխել Կո*

---

[172] MM, t. I, p. 278.

[173] MM, t. II, p. 82.

[174] MM, t. II, p. 82.

[175] *Մանրամասն տե՛ս Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Վասպուրականցիներ Բյուզանդական կայսրության ծառայության մեջ XI–XII դարերում.– «Պատմա-բանասիրական հանդես», 2000, № 3, էջ 148–150 (Հայ-բյուզանդական հետազոտություններ. հ. Ա, էջ 734–736): Նաև՝* Р. М. Б а р т и к я н. К византийской просопографии. Μοναστηριῶται кто они? ΑΝΤΙΔΩΡΟΝ. К 75-летию академика РАН Геннадия Григорьевича Литаврина, СПб., 2003, с. 40 – 46.

[176] ἄνθρωπος- *մարդ: Սոցիալական տերմին է, ունի տարբեր իմաստներ, այդ թվում և վասալական կախման մեջ գտնվող անձնավորություն: Հատուկ տե՛ս* J. V e r p e a u x. Les οικειοι. Notes d' histoire institutionnelle et sociale.– "Revue des Etudes Byzantines". T. XXIII, 1965.

*կղզին, ծառայելու Պատմոս կղզու վանականին (փաստաթուղթը սկզբից պակասավոր է և նրա անունը հայտնի չէ) պատկանած և փոխանակությամբ պետությանն անցած կալվածքներում: Փաստաթղթի վերջում հանվանե հիշված են «զինվորները» իրենց կանանցով, երեխաներով, թոռներով ու հարսներով: Երրորդը* Կիրիակոս Ձմշկիկն *է (*Κυριακον Τζιμισχιν*), նրա կինը՝ Իրենե, որդին՝ Նիկեփոր*[177]*:*

*6772 (1262) թ. հուլիսի 12-ի Կեֆալոնիայի եպիսկոպոսության կալվածքների ցուցակում հիշվում են Ս. Անարծաթից վանքի կալվածքները, որոնց թվում և* «Ձմշկիկի կոչված կալվածքը» *(*ἕτερον χωράφιον το λεγόμενον τοῦ Συμισκῆ*)*[178]*:*

*6825 (1316) թ. հոկտեմբերի Կոստանդնուպոլսի պատրիարքարանի հոգևոր խորհրդի նիստի որոշման մեջ հիշվում է ոմն Թեոդորակես, Խրիստոֆորոսի փեսան, որ դիմել է սուրբ սինոդ և հայտնել, որ իր աներհայրը խոստացված օժիտը լրիվ չի տալիս: Վերջինս հրավիրվում է սինոդ, բայց հիվանդության պատճառով չի ներկայանում, այլ գրավոր, իր ստորագրությամբ հաստատված բացատրագիր է ներկայացնում, ցույց տալով, որ պարտք է մնում քառասունչորս ոսկեդրամ և ի վիճակի չէ վճարելու: Նա խոստանում է վճարել, երբ կկարողանա, իսկ իր մահվան դեպքում իր ունեցվածքից փեսան կստանա հիշյալ գումարը: Սինոդը, որին մասնակցում էին Հերակլիայի, Պերգամոնի, Խրիստուպոլսի, Դյուրախիոնի եպիսկոպոսները, Քսանթիայի արքեպիսկոպոսը, ընդառաջում են Խրիստոֆորոսին:*

*Նույն նիստին ներկայանում է ոմն Մանուիլ Հեքսակուստոս և հայտնում, որ օրինական կարգով ամուսնացել էր* երեց Պանորեոս Ձմշկիկի *(*Πανωραιος Τζυμισχής*) դստեր հետ և բաժանվել նրանից, քանզի վերջինս հարաբերություններ մեջ էր մտել այլ տղամարդկանց հետ: Մանուիլը նախորդ պատրիարքի (Նիֆոնի – 1310-1314) սինոդական որոշմամբ ստացել էր նաև կնոջ օժիտն ամբողջությամբ: Օժիտի գումարի պակասող մասը պատրիարքի որոշմամբ նա ստանում է անշարժ գույքի ձևով և երեք տարի է ինչ պահում է: Երեց* Պանորեոս Ձմշկիկը, *դիմելով սինոդին, հայտնում է, որ իր դուստրը ցանկանում է վանք մտնել և մայրապետ դառնալ, նա որոշել է Մանուիլին անցած տները ընծայել վանքին, ուստի խնդրում է դրանք իրեն վերադարձնել: Սինոդը որոշում է այդ տներից հիսուն ոսկեդրամ արժեցողը տալ վանք մտնել որոշած կնոջը: Եթե կինը հրաժարվի վանք մտնել, ապա այդ տները պիտի վերադարձվեն Մանուիլ Հեքսակուստոսին*[179]*:*

## 19. ՍԵՆԵՔԵՐԻՄՅԱՆՆԵՐ - ΣΕΝΑΧΗΡΕΙΜ

*Արծրունիների թագավորական տան վերածվելը բյուզանդական ազնվականական ընտանիքի, տեղի ունեցավ 1021 թ. Սենեքերիմ Արծրունու Սեբաստիա կատարած գաղթի հետ միաժամանակ: Սենեքերիմի անունով պիտի Սենեքերիմյաններ կոչված լինեին նրա որդիները և մերձավոր ազգականները: Բյուզանդական աղբյուրներում հայտնի են* Σεναχερειμ *տոհմանունը կրող, իշխող դասին պատկանող մի շարք անձնավորություններ, անկասկած Սենեքերիմ Արծրունու ընտանիքից*[180]*:*

*Ա. Կաժդանն իր գրքում հիշում է այդ տոհմանվամբ տասներկու հոգու: Նա նրանց ներառել է իր աշխատության Ա գլխում «Անտարակույս հայկական ընտանիքներ» խորագրի տակ*[181]*:*

*Միքայել VIII Պալեոլոգոս կայսեր 6771 (1259) թ. մայիսի խրիսովուլը վերաբերում է Պատմոս կղզու Հովհաննես Աստվածաբան Ավետարանչի վանքին տրված առանձնաշնորհումներին: Այն հաստատում է անցյալում իր ձեռք բերած իրավունքները և հանվանե նշում վանքի կալվածքները: Հիշվում են նաև Նիկիայի կայսր Թեոդորոս I Լասկարիսի*

---

[177] MM, t. VI, p. 57–58.
[178] MM, t. V, p. 58–59.
[179] MM, t. I, p. 64-66.
[180] *Տե՛ս Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Վասպուրականցիներ ..., էջ 141-145:*
[181] К а ж д а н. Армяне, с. 33-36.

(1208-1222) և Հովհաննես III Դուկաս Վատացեսի (1222-1254) նվիրաբերածները և վերջինիս խրախուսվուլով հաստատվածները[182]: Միկլոշիչ-Մյուլլերի հրատարակության մեջ փաստաթուղթը ստորագրողի անուն-ազգանունը հիշված չէ, քանզի նրանց ժամանակ փաստաթուղթը կազմելուց հետո, այնտեղ, որտեղ նշված էր ստորագրողի անունը, պահպանակով ծածկված էր: Վերջերս այն հանվեց և տակին կարդացվեց ստորագրությունը՝ Միքայել Սենեքերիմ (Μιχαηλ τὸν Σεναχηρείμ), վարած պաշտոնը՝ պրոտոստրատոր (πρωτοστρατωρ)[183]: Ինչպես ցույց է տալիս Էրա Վրանուսին. «այս Միքայելը հավանաբար պատկանում էր Սենախերիմների հայտնի ընտանիքին, որի անդամները արժանացան բարձրադույն աստիճանների, հատկապես XIII դ. և հետո: Հատկապես նշում եմ Ալեքսիոս IV-ի ժամանակ գործած Սենախերիմը, որ Նիկոպոլիս բանակաթեմի զորավարն էր և որի այրու հետ ամուսնացավ հետագայում Էպիրոսի իշխանության հիմնադիր Միքայելը»[184]: Հայտնի է նաև Անգելոս Սենեքերիմը, պինկերնես[185], Անդրոնիկոս II Պալեոլոգոս կայսեր օրոք (1282-1328):

Միքայել Սենեքերիմը հիշվում է նաև Միքայել VIII Պալեոլոգոսի 1262 թ. սեպտեմբերին կազմված «Որոշման» մեջ, որում ցույց է տրված, որ նա Պատմոս կղզու վանքին նվիրաբերել է չորս լուծ հող (γῆν τεσσάρων ζευγαριων): Փաստաթղթի հիմնական բովանդակությունը վանքի և Մալախիոս գյուղի բնակիչների միջև հողային վեճին է վերաբերում, որում կայսրը պաշտպանում է վանքի իրավունքները: Փաստաթուղթը ստորագրված է պրոտոստրատոր[186] Միքայել Սենեքերիմի կողմից (δια του πρωτοστρατορος Μιχαὴλ τοῦ Σεναχηρειμ)[187]: Նրան հիշատակում է բյուզանդական պատմիչ Գեորգիոս Պախիմերեսը[188]:

Կոստանդնուպոլսի պատրիարք Կալլիստոս Ա-ը (1350–1354, 1355–1363) 6867 (1354) թ. մարտի նամակով, գիմում է փոքրասիական Փիլադելփիա քաղաքի մետրոպոլիտ՝ համայն Լյուդիայի հիպերտիմոս և էքսարքոսին, ում մայրապետ Անգելինա Սենեքերինայի (Αγγελίνα η Σεναχηρίνα) ծավալած գործունեության առթիվ: Խնդրո անձնավորությունը Փիլադելփիայի «Տեր Դավթի» կոչված և Աստվածածնին նվիրված կանանց պատրիարքական վանքի մայրապետներին «հոգեկան վնաս» էր հասցրել: Այդ իսկ պատճառով պատրիարքը վերոհիշյալ մետրոպոլիտին կոչ է անում իր վրա վերցնել պատրիարքական վանքի հոգացությունը, որպեսզի մայրապետները, կանանց վայել, վերադառնան վանական կյանք և միմիայն աստծուն նվիրվեն: Ինչ վերաբերում է իրեն՝ Սենեքերինային, որ «փչացրել էր մայրապետների հոգիները և անընդունելի արարքներ գործել, այնտեղից անհապաղ վռնդես, որպեսզի խայտառակությունը վատաբար չտարածվի նաև առողջ մայրապետներին», և «հիշյալ վանքը աստուծով վերադառնա նախկին կարգականոնին ու վիճակին»[189]:

6907 (1399) թ. օգոստոս ամսին Կոստանդնուպոլսի պատրիարքի (Մատթեոս Ա, 1397-1410) կարգադրությամբ սկսվեց նշանադրության և ամուսնության խորհրդին ենթակա անձանց ցուցակի կազմումը: Արանում նշվում էին նշանադրվողների անունները, ամուսնացողների անունները, որերորդ ամուսնություն լինելը, ապա և խորհուրդը կատարող քահանայի անունը: Վերջինս այն կատարելու կնքված թույլատվությունը ստանում էր պատրիարքարանից: Խորհրդին մասնակցելու կամ վկայելու համար պատրիարքարանից ու-

[182] MM, t. VI, p. 199-201.

[183] Βυζαντινα ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου, σελ. 124-132.

[184] Նույն տեղում, էջ 132: Տե՛ս նաև Δ. Ζ α κ υ θ η ν ο ῦ. Μελέται τῆς περὶ διοικητικῆς διαιρεσεως καὶ τῆς επαρχιακῆς διοικησεως ἐν τω Βυζαντινῷ κρατει. Ἐπετηρὶς Ἑταιρίας Βυζαντινων Σπουδων, 17 (1942), σελ. 240 κε. D. M. N i c o l. The Despotate of Epirus, 1204-1267. Oxford, 1957, p. 13.

[185] Βυζαντινὰ ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου, σελ. 132.

[186] MM, t. VI, p. 214.

[187] Քննական հրատարակության մեջ Միքայելի պաշտոնը սրբագրված է πρωτοαση(κρη)τ(ou) «պրոտոասեկրետ»: Βυζαντινα ἔγγραφα τῆς Μονῆς Πατμου, σελ. 261.

[188] G e o r g i i P a c h y m e r e s. Historia. T. I, Bonnae, 1835, p. 92.

[189] MM, t. I, pp. 333-334.

ղարկվում էր հատուկ անձնավորություն, որ, ոչ միշտ, հիշվում էր տվյալ ցուցակում: 1400 թ. հունվարի 8-ին Հովհաննես Սիրոպուլոսի և Մարիայի ամուսնության խորհուրդը կատարելու թույլտվություն ստացավ Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիայի ավագ քահանան (ο μέγας πρωτοπαππας): Որպես վկա ուղարկվեց Սենեքերիմը (ο Συναχηρειμ)[190]:

## 20. ՎԱՀԱՆ - B A X A N H Σ

Անունը բյուզանդական աղբյուրներում բերված է Βααιης (Վաանես) գրությամբ: Թեոփանես Խոստովանողը Հերակլիոս I կայսեր (610-641) թագավորության 17-րդ տարում և Խոսրով Փարվեզի վերջին տարում հիշում է բյուզանդական բանակի ստրատելատ Վաանեսին (Βαάνην τον στρατηλάτην) [191]: Նա գլխավորում էր բյուզանդական բանակը նաև արաբների դեմ Օմար խալիֆայի (634-644) առաջին տարում[192]: Հերակլիոսի դեմ ապստամբած զորքը Վաանեսին կայսր է հռչակում[193]:

Մի այլ Վաանես՝ Յոթդևյան մականվանյալ (Βααιης ο επικλην᾽Επταδαίμων) Տիբերիոս II (III) թագավորության (698-705) առաջին տարում Զորրորդ Հայքը ենթարկեց արաբներին[194]: Վաանես էր կոչվում նաև 902 (կամ 903) թ. վախճանված հայազգի Ս. Մարիամ Նորավկայի որդին[195]: Հարցն այն է, որ հունարեն այբուբենում «հ» տառ գոյություն չունի, իսկ լեզվում՝ հնչյուն: Ահա այստեղ, մեր փաստաթղթում, «հ»-ն փոխարինված է «χ»-ով՝ Βαχανης- Վախանես: Մեր փաստաթղթում այս հատուկ անունը բերված է որպես ազգանուն:

6783 (1275) թ. մարտի ակտը հոգու փրկության համար Լեմվոն Ս. Աստվածածին վանքի մոտակայքում (Զմյուռնիա), հիշյալ վանքին նվիրաբերում են ինն ստրեմա տարածությամբ կալվածքը: Փաստաթղթի վերջում ստորագրել է երեք վկա, որոնցից մեկը՝ Նիկոլայոս Վա(կ)խանեսն (Νικόλαος τοῦ Βακχανη)[196] է: Հաջորդ տարվա՝ 6784 (1276) թ. մարտի փաստաթուղթը ոմն Միքայել Պետրիցեսի կալվածքի վաճառքին է վերաբերում: Այն բաղկացած է երեսուն ստրեմայից և վաճառքի գինն է տասը ոսկեդրամ, «այսինքն՝ մեկ ոսկեդրամ երեք ստրեմա»: Ստորագրողների մեջ հիշվում է նախորդ փաստաթուղթը ստորագրած Հովհաննես Ասկոսը: Հաջորդը Նիկետաս Վախանեսն (Νικήτας ο Βαχαιης)[197] է: Անվան մեջ գրչի սխա՞լ պիտի տեսնել, նախորդ Նիկոլայոս անվան աղավաղու՞մ, թե՞ հակառակը, հենց սա է նախորդի աղավաղումը՝ հայտնի չէ: Հազիվ թե տարբեր անձնավորություններ լինեն:

## 21. ՎԱՐԴ-B A P Δ A Σ

Բյուզանդական աղբյուրներում հանդիպում են և՛ Վարդ (Βάρδας), և՛ Վարդան (Βαρδάιης): Եթե Ա. Կաժդանը «Վարդաններին» հիշում է, այն էլ իր գրքի Գ գլխում՝ «Ենթադրաբար հայկական ծագումով ընտանիքներ» խորագրով, ապա «Վարդեր» նրա գրքում չկան, հավանաբար նա նրանց հայ (կամ «ենթադրաբար» հայ) չի համարում: Թեև IX դ. կեսին հայտնի է նշանավոր կեսար Վարդասը՝ հայազգի կայսրուհի Թեոդորայի եղբայրը:

---

[190] MM, t. II, p. 299.

[191] Theophanis Chronographia, rec. C. De Boor. Vol. I, Lipsiae, 1883, p. 318 (հայ. թարգմ. էջ 30).

[192] Նույն տեղում, էջ 337 (հայ. թարգմ., էջ 46):

[193] Նույն տեղում էջ 337–338 (հայ. թարգմ., էջ 46–47):

[194] Նույն տեղում, էջ 372 (հայ. թարգմ., էջ 84):

[195] Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Մամիկոնյան (՞) սուրբ Մարիամ Նորավկայի (+ 902-903 թթ.) բյուզանդական Վարքը.– «Էջմիածին». 1976, №Ա, էջ 42 (Հայ-բյուզանդական հետազոտություններ. հ. Ա, էջ 351):

[196] MM, t. IV, p. 171–172.

[197] MM, t. IV, p. 173.

«Վարդաս»-ը որպես տոհմանուն չի հիշվում, բայց որպես անձնանուն հանդիպում է բազմիցս: Ինչ վերաբերում է «Վարդանին», ապա որպես տոհմանուն հանդիպում է:

6724 (1216) թ. մարտի փաստաթուղթը վերաբերում է ոմն Վասիլ Գավալասի կողմից Պատմոս կղզու Հովհաննես Աստվածաբանի վանքին իր ընտանեկան կալվածքների և նրանցում տուկա տների վաճառքին: Փաստաթղթի տակ ստորագրած պաշտոնավոր անձի տիտղոսները ձեռագրում լրիվ չեն պահպանված, կարդացվում է միայն «... Եփեսոսի, և համայն Ասիայի էքսարքոս տեր Նիկոլայոսի...»: Հավանաբար Եփեսոսի մետրոպոլիտի ստորագրությունն էր: Մնացած վկաները Եփեսոսի սրբազնագույն մետրոպոլիտության սարկավագն ու սակելլարիոսն էր, և սարկավագն ու կանստրիսիոսը: Առաջին ստորագրողը՝ սեաստոս Վարդաս Ատուեմն էր (Βαρδας σεβαστὸς ὁ 'Ατουέμης): Վարդասի ազգանունը՝ Ատուեմ (Ատոմյան) չի բացառվում, ավելին, միանգամայն հավանական է, որ հայկական Ատոմ անունն է: Այն ավանդված է V դ. և գործածվում է մինչև այսօր: Մեր ենթադրության օգտին է խոսում և այն հանգամանքը, որ Ատոմ Անձևացին, որդին Գուրգեն Ապուպելճի (IX դ. վերջ), արաբական աղբյուրներում կոչված է Ատում: Փաստաթուղթը գրի առնողը՝ Հովհաննես Աստվածաբանի վանքի անագնոստեսը և Եփեսոս քաղաքի նոմիկոս Նիկոլայոսը[198]:

Միլետոս քաղաքի մոտ գտնվող Լատրոս լեռան վրա Ս. Պավլոսի վանքի մի անթվակիր փաստաթուղթ, հավանաբար գրված Կոստանդնուպոլսի պատրիարք Մանուիլ I-ի (1217-1222) ժամանակ, վերաբերում է մի պրոաստիոնի շուրջ գնացած վեճին: Վկաների թվում հիշված է ոմն Վարդաս Մակրոխերես (Βάρδας ὁ Μακροχέρης), այն է՝ Վարդ Երկայնաբազուկ[199]:

## 22. ՎԱՐԴԱՆ - Β Α Ρ Δ Α Ν Η Σ

Բազմիցս հիշված Կեֆալոնիայի եպիսկոպոսության կալվածքների ցուցակում (1262 թ.) Ս. Լևոնի վանքի այգիների և ծառայողների շարքում հիշվում են քահանա Կոստանդին Վարդանը (Κωνσταντῖνος ὁ Βαρδ(ι)άνης) իր կնոջ, չորս որդիների ու դստեր հետ: Քահանայի այրի հարսը ունի մեկ դուստր: Այնուհետև քահանա Վարդանի որդի Նիկետասը (Νικήτας τοῦ Βαρδ(ι)άνη) ունի մեկ որդի և երկու դուստր[200]:

Անդրոնիկոս III Պալեոլոգոս կայսեր (1328-1341) 6844 (1336) թ. մարտ ամսին տրված փաստաթուղթը խրիսովուլ է, որով հաստատվում է նախկին կայսրեր Նիկեփոր III Բոտանիատեսի (1078-1081) և Ալեքսիոս Ա Կոմնենոսի (1081-1118) Ստագոյ եպիսկոպոսության պատկանող անշարժ և շարժական ունեցվածքը: Ստագոյ (Σταγοι հոգնակի) միջնադարյան անվանումն է Հունաստանի Թեսալիա նահանգի ժամանակակից Կալամբակա քաղաքի: Ստագոյ անվամբ գյուղաքաղաք հայտնի է X դ.: Հիշյալ կայսրերի խրիսովուլներով եպիսկոպոսությանն էին շնորհվել պարիկոսներ իրենց տասնինն լուծ հողով և այլ հազար մոդ հող: Անդրոնիկոս III Պալեոլոգոսից առաջ իշխած կայսրերը ևս եպիսկոպոսությանը շնորհել են խրիսովուլներ և սիգելներ, որոնց համաձայն, եպիսկոպոսությունն ազատված է հարկերից, նրան ենթակա են իր տարածքում գտնվող վիճակավորները, բնակիչները, գյուղերը, վանքերը, հոգևորականներն ու աշխարհիկ մարդիկ, վալախները, բուլղարները և ալբանացիները: Փաստաթղթում հանվանե թվարկված են այդ բոլորը, մեծամասամբ սլավոնական անվանումներ: Մի գյուղ հիշված է որպես «Վարդանի գյուղ» (χωρίον το λεγόμενον Βαρδανι)[201]:

---

198 MM, t. VI, p. 174-176.
199 MM, t. IV, p. 293.
200 MM, t. V, p. 43.
201 MM, t. V, p. 272.

## 23. ՏԱՐՈՆԱՑԻՆԵՐ - ΤΑΡΩΝΙΤΑΙ

Տարոնացիների բյուզանդական ընտանիքը սերում է Տարոնի Բագրատունիներից: Հովհաննես Սկիլիցեսը վկայում է, որ 968 թ. Տարոնի իշխան Աշոտի մահից հետո, նրա որդիներ Գրիգորն ու Բագարատը բյուզանդական «կայսեր կողմն անցան՝ նրան ընձեռելով իրենց Տարոն երկիրը: Կայսրը նրանց պատրիկի պատվաստիճան շնորհեց, շատ եկամտաբեր կալվածքներ նվիրաբերեց»[202]: Իսկ ըստ Ստեփանոս Տարոնեցու Ասողկան, «ի ՆԺԶ թուականին խաւարեցաւ արեգակն և վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ, և Տարօնոյ Հոռոմք տիրեցին»[203]: Ահա սրանցից է սկիզբ առել Տարոնացիների և Թոռնիկյանների բյուզանդական ճյուղը[204]:

Ա. Կաժդանի գրքում նրանք ընդգրկված են առաջին գլխում «Անտարակույս հայկական ընտանիքներ» խորագրի տակ: Հեղինակը նշում է 22 Տարոնացիների անուններ, այդ թվում և փաստաթղթերի մեր խնդրո առարկա ժողովածուից մեկ անձի՝ Թեոդորոս Տարոնացուն:

6704 (1195) թ. հոկտեմբերի փաստաթղթում հիշվում են Ալեքսիոս III Անգելոս Կոմնենոսի (1195-1203) Պատմոս կղզու Հովհաննես Աստվածաբանի վանքին շնորհած իրավունքին՝ պետական կադաստրում չգրանցված ունենալու մեկուկես հազար մոդ բեռնատարողության (χωρήσεως) երեք նավերի էքսկուսիան: Նավերն ազատված էին հարկից ու մաքսից և իրավունք ունեին նավարկելու Բյուզանդական կայսրության համայն ջրային տարածքով: Վանքի վանականները դիմել էին նախկին կայսր Իսահակ II Անգելոսին (1185-1195) և խնդրել հաստատի իր նախապապ Ալեքսիոս Կոմնենոսի հարցին վերաբերող խրիսովուլը: Ալեքսիոս III Կոմնենոսը ընդառաջում է վանականների խնդրանքին, նաև թույլ տալիս, որ այդ նավերը տարին մեկ անգամ խարիսխ գցեն Կոստանդնուպոլսի ափին: Փաստաթղթում խոսք է լինում վանքի մի նավի չափը, բեռնատարողությունը և այլն որոշելու մասին: Հանձնաժողովը հաստատում է, որ այն իրոք շինված է վանքի միջոցներով և վանքի սեփականությունն է հանդիսանում: Չափագրողների մեջ էին Ծովային սեկրետի անագնոստես Հովհաննես Կամատերոսը, որը պրոտոմանդատորիկոն օֆֆիկիոնը վարում էր պանսեբաստ սեբաստ, էպի տոն դեէսեոն գրասենյակի վարիչ Կոստանդին Թոռնիկի կարգադրությամբ, կայսերական վեստիարիտես Եվստաթիոս Կաստամոնիտեսի կարգադրությամբ՝ պրոտոէքսատիկոնը վարող Վասիլ Արմենոպուլոսը և այլք: Փաստաթուղթը ստորագրել են Ծովային սեկրետի 14 կայսերական նոտարներ, նրանցից մեկը՝ Ծովային սեկրետի կայսերական նոտար Թեոդորոս Տարոնացին է (῾Ο βασιλικὸς νοτάριος τοῦ σεκρέτου τῆς Θαλάσσης Θεόδωρος ὁ Ταρωνίτης), մյուսը պանսեբաստ սեբաստ և Վարդարիոտների պրիմիկերիոս Կոստանդին Տարո(նացու) (Κωνσταντίνου Ταρω(νί)του)) կարգադրությամբ Գեորգիոս Մ...ն[205] (փաստաթղթում անունը եղծված է):

Բազմիցս հիշված Կեֆալոնիայի կղզու եպիսկոպոսության կալվածքների ցանկում (1262) Թեսալիայի Օլիմպոս լեռան վրա կառուցված վանքի և դրան պատկանող կալվածքների թվում հիշատակված է Նիկողայոս Տարոնացու կալվածքը (χωράφιον Νικολάου τοῦ Ταρωννάτου) չորս մոդ տարածությամբ[206]:

Մոտ 1400 թ. Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիայի հոգևոր խորհրդի կողմից կազմված մի փաստաթղթում խոսքը վերաբերում է Թեոդորա Ասպիետիսայի (տե՛ս և Ասպետի տակ, N 1)

---

[202] Հ ո վ հ ա ն ն ե ս  Ս կ ի լ ի ց ե ս, էջ 28:

[203] Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական. Սանկտ Պետերբուրգ, 1885, էջ 183: Թվականի մասին տե՛ս Գ. Գ ր ի գ ո ր յ ա ն. Տարոնի Բագրատունիների ֆեոդալական իշխանությունը IX–X դարերում. Երևան, 1983, էջ 146-148:.

[204] N. A d o n t z. Les Taronites en Arménie et à Byzance. In: EAB, p. 243. Ա. Կաժդանը XI–XII դդ. նշում է այդ ընտանիքի 22 անդամ (К а ж д а н. Армяне, с. 17-25):

[205] MM, t. VI, p.130. Բնագրում Ταρο ... էր, լրացրել ենք ենթադրաբար:

[206] MM, t. V, p. 53.

*և նրա եղբայր Սիմոն Ասորու Ս. Դիմիտրիոսին նվիրված տաճարի կառուցման մասին: Թեոդորա Ասպիետիսան այն ժառանգում է իր դստեր՝ Աննա Ասպիետիսային: Վերջինս իր հերթին Սիմոն Ասորու որդի Մանուիլ Տարոնացուն (Μανουηλ τον Ταρωνιτην) խոստացավ չնորհել տաճարի հարավային մասի տարածքը իր համար խուց և տուն կառուցելու համար, պայմանով, որ նա Ս. Դիմիարիոսի տաճարին տա Մանգուբիոտիսա Աստվածածնի սրբապատկերը: Վեճը ընթանում է Մանուիլ Տարոնացու և Աննա Ասպիետիսայի ամուսին Պանդոլեոնի (Παντολεων) միջև և վերաբերում է վերոհիշյալ տան սեփականությանը*[207]*:*

## ՀԱՅ - ΑΡΜΕΝΗΣ, ՀԱՅԵՐ - ΑΡΜΕΝΙΟΙ, ΑΡΜΕΝΑΔΕΣ

*Միկլոշիչ-Մյուլլերի վեցհատորյակում, բացի հայկական անուն-ազգանուններ կրող անձանցից, հանդիպում են անհատներ, որոնք հիշվում են իրենց պատկանելությունը վկայող էթնիկոնով: Լինում են դեպքեր, երբ վերջինս հիշվում է առանց հատուկ անվան, նաև հոդնակի թվով, որ փաստում է այս կամ այն տարածքում հայկական կոմպակտ բնակչության առկայությունը:*

*6587 (1079) թ. ապրիլի փաստաթուղթը Նիկեփոր III Բոտանիատես կայսրի (1078-1081) խրիսովուլն է, որում խոսք է լինում մագիստրոս և կրիտես, հայտնի պատմիչ Միքայել Ատտալիատեսի Թրակիայում և Մակեդոնիայում ունեցած անշարժ գույքի մասին, դրա վերաբերյալ նախորդ կայսր Միքայել VII Դուկասի (1071-1078) կողմից ստացած էքսկուսիայի, այսինքն՝ տվյալ գույքն ամբողջությամբ ազատված է ամեն տեսակի հարկերից ու տուրքերից: Նիկեփոր Բոտանիատեսն իր խրիսովուլով հաստատում է Ատտալիատեսի՝ Միքայել Դուկասից ստացած խրիսովուլը: Փաստաթղթում էքսկուսիայի արժանացած անշարժ գույքի թվում նշված է Ռեդեստոսի (այժմ՝ Ռոդոստո) շրջանում եղած «Հայոց Լևկին» (Λεύκη των Ἀρμενίων)*[208]*: «Լևկի» նշանակում է «Բարդի», բայց պարզ է, որ խոսքը ծառի չի վերաբերում, այլ այդ անունով հայկական բնակատեղիի:*

*6690 (1181) թ. հոկտեմբերի 27-ի մի փաստաթուղթ վերաբերում է տասը ոսկեդրամի դիմաց ոմն Գեորգիոս Խրիսովերգեսի կնոջ՝ Մարիա Անգելինայի կողմից «ազնվազարմագույն Կոմնենոս, տեր Թեոդորոս Վրանասին» վաճառած 14 ձիթենիներին, 3 կաղնիներին ու կալվածքին: Փաստաթուղթը ստորագրել են տասը վկաներ, այդ թվում և Լևոն Հայը* (Λέων ο Ἀρμενης)*: Խնդրո առարկա վայրը, ելնելով ստորագրողների գլխավորի վարած պաշտոնից «Զմյուռնիայի մետրոպոլիտության և Մանտեա թեմի տաբուլարների պրիմիկերիոս Նիկոլայոս Ֆիլոկինեգիտես», գտնվում էր Զմյուռնիայի շրջանում*[209]*:*

*Նույն Լևոն Հայը որպես վկա ստորագրել է նաև Զմյուռնիայի Լեմվոնի Աստվածածնի կայսերական վանքին Հովհաննես Պանդոլեոնի 16 ոսկեդրամի դիմաց 16 ձիթենիներ վաճառած անթվակիր փաստաթուղթը*[210]*: «Տեղացի մարդկանց կողմից ստորագրված» փաստաթղթի տակ կա և նույն Լևոն Հայի ստորագրությունը*[211]*: Այն գրված է հոկտեմբեր ամսին: Իսկ դեկտեմբեր ամսին նա ստորագրել է ևս մի փաստաթուղթ, որ վերաբերում է Զմյուռնիայի նույն Լեմվոն վանքին: Հարցի քննարկմանը մասնակցել է և վկայել վերևում հիշված «Զմյուռնիայի մետրոպոլիտության և Մանտեայի թեմի տաբուլարների պրիմիկերիոս Նիկոլայոս Ֆիլիկինեգիտեսը»*[212]*:*

*Բացի* Ἀρμενης *- Հայ արական էթնիկոնից, 6721 (1213) թ. փետրվար ամսին կազմված փաստաթղթում հիշվում է և էթնիկոնի իգականը: Վասիլ Մանդալի որդի Լևոնը Տրոպիգոնի շրջանում* (περιοχη των Τροπιγων) *«Հայուհու կալվածքի մոտ գտնվող» իրենց կալ-*

[207] MM, t. II, p. 404-405.
[208] MM, t. V, p. 145.
[209] MM, t. IV, p. 122-124.
[210] MM, t. IV, p. 133-134.
[211] MM, t. IV, p. 92.
[212] MM, t. IV, p. 94.

վածքները (χωράφια τα ὄντα καὶ διακείμενα ἐν μεν τῇ περιοχῇ των Τροπιγων ... πλησίον τῆς 'Αρμενισσας)[213] վաճառում են «փառավորյալ պրոտովեստիարիոս տեր Գեորգիոս Եվնուխոսին»: Նույն թվի մարտին կազմված մի այլ փաստաթղթում ասված է, որ ոմն Մանուիլ իր կնոջ և զավակների հետ վերոհիշյալ «փառավորյալ պրոտովեստիարիոս Գեորգիոս Եվնուխոսին» վաճառում են Տրոպիգոն վայրում գտնվող իրենց կալվածքը, որ գտնվում է «Հայուհու որդիների մոտակայքում» (πλησιαστας ἔχοντας τους παιδας τῆς 'Αρμένισσας)[214]: Թե ի՞նչ է ենթադրվում դրա տակ, դժվար է ասել: Թերևս Հայուհուն պատկանող կալվածքին կից, կամ մոտ: Փաստաթուղթը ստորագրել են Եվգենիոս Կիսսիանոսը՝ Միլեասոսի սրբազնագույն մետրոպոլիտության նոմիկոս և դևտերևոն Կոստանդին Մերսինիոտեսը (Մերսինցի՞):

6739 (1231) թ. օգոստոսի փաստաթուղթը վերաբերում է Քսենոս Լեգասի և նրա կնոջ Աննայի կողմից Զմյուռնիայի Լեմվոնի Աստվածածնի վանքի վանահոր տեր Գերասիմոսին հինգ ոսկեդրամի դիմաց վաճառած 18 ձիթենիներին: Հինգ վկաների թվում ստորագրել է Կոստանդին Հայը (Κωνσταντῖνος ὁ 'Αρμένης): Վերջում որպես վկա հատուկ ստորագրել է նաև «Զմյուռնիայի սրբազնագույն մետրոպոլիտության և Մանտեայի թեմի նոմիկոս քահանա Թեոդորոս Կալլիստոսը»[215]: Կոստանդին Հայը որպես վկա ստորագրել է նաև անթվակիր մի փաստաթուղթ, որ վերաբերում է սևաստոս տեր Հովհաննես Ալեթենոսի՝ Պանարետոս գյուղում գտնվող ձիթենիները Ս. Պանտելեիմոնի վանքին և նրա վանահայր տեր Լեոնտիոսին նվիրաբերելուն: Նա վանքին վերապահում է այդ ծառերը վաճառելու, փոխանակելու, արմատախիլ անելու, ցանկացած կերպ վարվելու իրավունքը: Վերջում հատուկ նշված է, որ փաստաթուղթը կազմել և որպես վկա ստորագրել է «Զմյուռնիայի սրբազնագույն մետրոպոլիտության և Մանտեայի թեմի նոմիկոս քահանա Թեոդորոս Կալլիստոսը»[216]:

6740 (1232) թ. փետրվարի փաստաթուղթը վերաբերում է Միքայել Կակավասի, նրա կնոջ, զավակների, թոռների կողմից Լեմվոն Ս. Աստվածածնի վանքին, վանահայր տեր Գերասիմոսին ու վանականներին Պանարետոս գյուղում գտնվող 27 ձիթենիների վաճառքին: Արժեքը՝ ութ ոսկեդրամ: Փաստաթուղթը ստորագրած հինգ վկաներից առաջինը՝ Կոստանդին Հայն է (Κωνσταντινος 'Αρμένης): Վերջում որպես վկա ստորագրել է «Զմյուռնիայի սրբազնագույն մետրոպոլիտ և Մանտեայի թեմի նոմիկոս քահանա Թեոդորոս Կալլիսատոսը»: Կարևոր է նշել, որ Պանարետոս գյուղը գտնվում էր Ֆինիկոս տեղում, որն արևելքից սահմանակից էր «Հայերին» (τοὺς 'Αρμενίους), և արևմուտքից «նույն Հայերին» (τοὺς αὐτοὺς 'Αρμενίους)[217]:

Կեֆալոնիա, Զակինթոս և Իթակե կղզիների կոմս Ռիկարդո Օրսինիի 1262 թ. կազմած Կեֆալոնիայի եպիսկոպոսության կալվածքների ցանկում Ս. Անարծաթից վանքի կալվածքների թվում հիշվում են. «Հայերի կալվածքը» (χωράφιον των 'Αρμενάδων)[218], «Հայոց աղբավայրը» (ρυποτόπιον τῶν 'Αρμενάδων)[219], Թեոդորոս Պարդոպուլոսի երկու արմակին, «որոնք գտնվում են «Հայերից այն կողմ» (πέραθεν τῶν 'Αρμεναδων)[220], ապա և «Հայոց շրջան» (περιοχὴ τῶν 'Αρμενάδων)[221] և «Հայոց վայր» (θέσις τω 'Αρμενάδων):

---

[213] MM, t. VI, p. 159.
[214] MM, t. VI, p. 164.
[215] MM, t. IV, p. 60-61.
[216] MM, t. IV, p. 76-77.
[217] MM, t. IV, p. 77-79.
[218] MM, t. V, p. 56.
[219] MM, t. V, p. 56. «Աղբավայր» բառը չպիտի ուղղակի իմաստով հասկանալ: Հավանաբար հունադավան մոլեռանդ հոգևորականության կողմից այդպես են կոչվել տեղաբնակ հայերը՝ միաբնակ դավանանքի պատճառով:
[220] MM, t. V, p. 56.
[221] MM, t. V, p. 56-57.

Նեստոնգոս անունով պարակիմոմենոսի պարիկոսերի «անարդար արարքներին ու չարագործություններին» է վերաբերում XIII դ. 30-ական թվականներին կազմված «Եկեղեցական վավերագիրը»: Այն սկսվում է հետևյալ նախադասությամբ. «Մեր հզոր տիրոջ՝ կայսեր ազգական, Թրակեսիոն բանակաթեմի դուքս տեր Փոկաս Ավտորիանոսը Զմյուռնիայի սրբազնագույն մետրոպոլիտության ամենապատվական հոգևորականներին ու իշխանավորներին, մեր սրբազնագույն տիրոջ՝ Զմյուռնիայի ամենապատվական մետրոպոլիտին գրություն ներկայացրեց, որով մեզ կոչ էր անում անպայման իր մոտ գալ կայսերական սրբազան երկրպագելի հրամանով նախատեսված Պրինովարիս գյուղը և քննության ենթարկել Լեմվոն կայսերական վանքի և ամենաազնվագույն դուքսի մեծ սֆենդոնեի պարակիմոմենոս Նեստոնգոսի խնդիրը»: Կայսերական կարգադրության համաձայն, Փոկաս Ավտորիանոսի մոտ են գալիս մեծ սակելարիոսը, սկևոֆիլաքսը, սակելիոնը, պրոտեկդիկոսը, պրոտոնոտարը, ավագ քահանան և Հովհաննես Մկրտչի եկեղեցում նիստ գումարում: Ներկա էին հիշյալ վանքի վանականները, վանահոր ներկայացուցիչ տեր Գերմանոսը, էկլեսիարքեսը, վանքի տնտեսը և այլք, իսկ պարակիմոմենոսի կողմից՝ նրա քահանան, պրակտոր Հովհաննես Թելոլիտեսը և ուրիշներ: Խնդիրը հետևյալն էր: Միքայել Կալիֆասը և Թեոդորոս Հայը (Θεόδωρος ὁ Ἀρμένης) վանքի այգում փայտե դույլով հարվածել են վանահորը, ապա ծեծի քաշել փառավոր տնտես Հակոբին, փառավոր վանական, էկլեսիարք Գրիգորին, նաև երանելի տնտես Կրուլինոսին: Վասիլ Պոնեբոսը նետահարել է Նիկոլայոս Պիլատոսի ձին, որ տեղնուտեղը սատկել էր: Այն արժեր տասնութ ոսկի: Ծակել են վանքի պահեստի սլատը և գողացել ձիթայուղ ու ցորեն: Թեև գողերը արարքի վայրում բռնվել են, պարակիմոմենոսը չի պատժել նրանց, ընդհակառակը, նրանց պաշտպանության տակ է առել, իսկ վանականներին հայհոյելով վռնդել: Նիկոլայոս Մանգուֆիսը վանքից իջնելիս, ձեռքին բռնած ունեցել է երեսուն լիտր ձիթայուղ: Վալսամոն Քսիլեասը հանդիպելով նրան, հարվածել է ամանին և «ձեթը կորել է»: Այդ էլ հայտնում են պարակիմոմենոսին, բայց նա դրա վրա ուշադրություն չի դարձրել: Օգոստոս ամսին կրակի են տալիս վանքի այգիները: Իսկ Պետրոսի որդի Նիկոլայոսը դաշույնով հարձակվել է վանականների վրա: Ահա այս բոլորը հատուկ գրի է առնվել և Զմյուռնիայի մետրոպոլիտության կողմից առաքվել Թրակեսիոն բանակաթեմի դուքս Փոկաս Ավտորիանոսին՝ ի գիտություն:

Փաստաթուղթը ստորագրել է Զմյուռնիայի մետրոպոլիտության խարտոֆիլաքս Գեորգիոս Խրիսովերգեսը[222]:

Կեֆալոնիայի եպիսկոպոսության իրավասությանը վերաբերող անշարժ գույքի 1262 թ. կալվածքների ցանկում Ս. Լևոնի վանքի կալվածքների առնչությամբ ասված է, որ Ստալու կոչվող վայրի կալվածքը գտնվում է «Հայի կալվածքի մոտ» (πλησίον χωραφίου του Αρμένου)[223]: Ս. Լևոնի վանքի կալվածքների թվում հիշվում է և «Հայի հողակտորը» (λαχίδιον τοῦ Ἀρμένη)[224]: Իսկ մի կալվածք էլ կոչված է «Կամատերոսի, այն է՝ Հայի» (χωράφιον τοῦ Καματηροῦ τὸ λεγόμενον τοῦ Ἀρμένου)[225]: Ս. Անարծաթից վանքի կալվածքներից հիշվում է «Հայի կալվածքը» (χωράφιον τοῦ Ἀρμένου)[226]:

Թեսալիայի (Մեծ Վալախիայի) հայկական համայնքների գոյության մասին վկայում է վանահայր Կիպրիանոսի 6784 (1276) թվակիր գրությունը: Դիմիտրիադա (այժմ՝ Վոլոս նավահանգիստը) եպիսկոպոսության Պետրա վայրի հողային տարածքը երկու վանքերի միջև բաժանելու մասին է: Վանքերից մեկի ստացած հողային տարածքի կեսը «նայում էր դեպի Արմենոնիսի» (τὸ ἀποβλέπον τὸ Ἀρμενονήσι)՝ «Հայոց կղզին նայող»[227]:

---

222 MM, t. IV, pp. 258-260.
223 MM, t. V, p. 37.
224 MM, t. V, p. 39.
225 MM, t. V, p. 34.
226 MM, t. V, p. 62.
227 MM, t. IV, p. 421.

Մակեդոնիայի Սալոնիկ քաղաքում XIII դարում բազմամարդ հայկական համայնքի գոյության մասին է վկայում Միքայել III Պալեոլոգոս կայսեր (1259-1282) կողմից 6785 (1277) մարտ ամսին Վենետիկի հանրապետությանը ընձեռնվող առանձնաշնորհումներին վերաբերող փաստաթուղթը: «Վենետիկի, Դալմատիայի և Խորվաթիայի դքսության, դրան ենթակա երկրների և կղզիների դուքս Հակոբոս Կոնտարինիի» պատվիրակությունը ժամանում է Կոստանդնուպոլիս: Փաստաթղթում մեկ առ մեկ թվարկված են առանձնաշնորհումները, այդ թվում՝ Կոստանդնուպոլսում երկու եկեղեցի՝ Ս. Աստվածածնի և Ս. Մարկոսի, ապա և «Սալոնիկ քաղաքում հայերին պատկանած եկեղեցին և նրա շրջակայքում գտնվող տները՝ մեկը կոնսուլի բնակության համար, մյուսը՝ կոնսուլի խորհրդականների համար, և երրորդը որպես Վենետիկի հանրապետության ապրանքների պահեստ»[228]: Հայկական եկեղեցու առկայությունը լավագույն վկան է հայկական համայնքի գոյության մասին: Բայց հիշված է անցյալ ժամանակով, այսինքն այն պատկանում էր անցյալում: Տվյալ պահին հայոց ձեռքում չէր: Թե ինչպես և ինչու են այն կորցրել, հայտնի չէ:

Հիշյալ ժամանակաշրջանից շուրջ մեկ դար առաջ Սալոնիկի հայկական համայնքի գոյության մասին վկայում է քաղաքի մետրոպոլիտ Եվստաթիոսը: Խոսելով քաղաքը նորմանդացիների կողմից 1185 թ. գրավելու մասին, նա ցույց է տալիս, որ քաղաքի շրջակայքում գտնվող Կրանիա և Զեմենիկոս վայրերում բնակվում էին միաբնակ հայեր, որոնք քաղաքում զգալի կշիռ ունեին[229]:

6789 (1281) թ. ապրիլի փաստաթուղթը Միքայել Իսիդորոսի կին Մարիայի, նրա զավակների և Կոնտոսի դուստր Աննայի քառասունհինգ ոսկեդրամի դիմաց Զմյուռնիայի Լեմվոնի Ս. Աստվածածին վանքին վաճառած հիսուն ձիթենիների և կալվածքի վաճառքին է վերաբերում: Ստորագրել են վաճառողներից՝ Մարիան, որդին՝ Թեոդորոսը, նրա եղբայր Հովհաննեսը, Կոնտոսի դուստր Աննան և Հովհաննես Հայը (Ἰωάννης Ἀρμένης)[230]:

6801 (1293) թ. մայիսի փաստաթուղթը կազմված է Արևելից բանակաթեմերի դոմեստիկոսի[231] կողմից, վերաբերում է Լեմվոն Աստվածածնի վանքի հողային տարածքի շուրջ գնացած վեճին՝ Մանուիլ Ապրենոսի և Մավրոզոմեսի կողմից վանքի հողային սեփականության վրա ոտնձգություններին: Դոմեստիկոսը ի վիճակի չլինելով անձամբ մասնակցել հարցի քննության համար ուղարկում է իր մարդկանց: Նրանք գալիս են վիճահարույց վայրը: «Այնտեղ էին գտնվում Մանտեայի Պանարետոս գյուղի վկայություն տալու ընդունակ, տեղին քաջածանոթ, անվանի ավագներ»: Հանվանե նշված է 13 հոգի: Ցանկում երրորդը Լևոն Հայն է (Λέων ὁ Ἀρμένης): Վերջում ստորագրել է. «Ծառան մեր հզոր և սուրբ տիրոջ՝ կայսեր Մանուիլ սևաստոս Զդուրոպուլոս, Անատոլիկոն բանակաթեմի դոմեստիկոս»[232]:

Կոստանդնուպոլսի պատրիարք Եսայասի (1323-1334) կողմից հայոց կաթողիկոս Կոստանդին Դ Լամբրոնացուն (1323-1326) ուղարկված անթվակիր նամակում խոսք է լինում եկեղեցիների միության մասին, որ այդ նպատակով Կոստանդնուպոլիս են ժամանել վերջինիս պատվիրակները և պատրիարքն այդ խնդրով գումարել է սինոդի նիստ, որին, բացի բարձրաստիճան հոգևորականներից, ներկա էր և կայսրը իր սինկլիտոսի (սենատի) անդամներով: Կոստանդին Լամբրոնացու նամակում ասված էր, թե իբր հայերը հրաժարվում են իրենց հայրերի սխալ դավանանքից և ջերմորեն խնդրում են պատրիարքին իրենց ընդունել Տիեզերական եկեղեցու գիրկը: Իր կողմից պատրիարքը Կիլիկիա է ուղարկում իր պատվի-

---

228 MM, t. III, p. 88-89.

229 Eustathii Metropolitae Thessalonicensis Opuscula. Ed. Theophilus Lucas Frieder. Tafel. Amsterdam, 1964, XXV. De Thessalonica urbe a Latinis capta Narratio, pp. 298-299.

230 MM, t. IV, pp. 135-136.

231 Այդպես էր կոչվում Բյուզանդիայի Փոքրասիական բանակաթեմերի դոմեստիկոսը, բայց տվյալ ժամանակաշրջանում դրանց մեծ մասը թուրքերի ձեռքում էր և կոչումը անախրոնիզմ է:

232 MM, t. IV, p. 229.

*րակներին, որոնց թվում էր և «այստեղի (Կոստանդնուպոլսի - Հ. Բ.) Հայերի մեծարգո եպիսկոպոսը» (τον ἐντιμοτατον επισκοπον τῶν ενταυθα ᾿Αρμειίων): Կայսրը նույն բովանդակությամբ նամակ է ուղարկում «Կիլիկիայի, Իսավրիայի և Համայն Հայաստանի ռեքսին»[233]:*

*Երկու նամակներում էլ, նույն բառերով, հիշվում է Հայոց կաթողիկոսի բողոքը Բյուզանդիայի Հայերին բռնությամբ քաղկեդոնիկ դարձնելու մասին, որին և՛ պատրիարքը, և՛ կայսրը փորձում են Համոզել, որ Հայերն այդպես վարվեցին «ոչ թե բռնությամբ կամ ստիպման Հետևանքով, ... այլ սեփական կամքով, սեփական նախաձեռնությամբ և ցանկությամբ»[234]: Վարդան Արևելցին դեռ 1186 թ. ցույց էր տալիս, որ «Ի վերայ Յունաց թագաւորեաց Փիսիկն, որ և ՍաՀակ (ԻսաՀակ II Անդելոսը 1185-1195) և յարոյց Հալածանս և չարչարանս ի վերայ Հայադաւան ազդաց, զի դարձցին յաղանդն նոցա: Վասն որոյ գրէ առ նա աղէրսանս պատրիարքն Գրիգոր եղբորորդի տեառն Ներսէսի և Գրիգորի կաթողիկոսացն Հայոց, խաղաղանալ ընդ ժողովրդեանն Աստուծոյ: Եւ ոչ լուաւ նմա, այլ գյոլովս դարձոյց ի կրօն իւր և զայլ Հալածանս արար»[235]: Այսինքն այդ քաղաքականությունը շարունակվում էր դրանից դարուկես Հետո էլ:*

*Մի փաստաթուղթ, որ վերաբերում է Բյուզանդական կայսրության անկումից անմիջապես Հետո տեղի ունեցած իրադարձություններին, Վենետիկի Հանրապետության իշխանության ներքո գտնվող Հունական տարածքների Հույն բնակչության նկատմամբ կաթոլիկ Հոգևորականության Հոդևորսությանը և այդ առթիվ նրա գործած բռնություններին: Նման քաղաքականության մեջ քննադատվում է նախ և առաջ Վենետիկի դոժ Ջովաննի Մոչենիգոն: Այդ խնդրին է վերաբերում 6988 (1480) թ. Հունվարին Կոստանդնուպոլսի Տիեզերական պատրիարք Մաքսիմոս III-ի դոժին ուղղված նամակը: Երկարաշունչ նախաբանից Հետո, պատրիարքը բողոքում է. «Այգ բոլորը ինչու՛ ենք ասում: Այն պատճառով, որ Վենետիկի բարձրագույն և փառավորյալ դուքսը խաղաղության թշնամի Հռոմեածին[236] ոմանց Հանդեպ ներողամտություն է Հանդես բերում, ուշադրություն չի դարձնում իր իշխանության տակ գտնվող վայրերում մեր ազգակից խեղճ Հռոմների դեմ նրանց գործած բռնություններին: Դա Համարում ենք մեր Հանդեպ[237] արՀամարանք ու անպատվություն: Ինչու՞ են Հռոմների նկատմամբ այդպես վարվում: ՈրովՀետև Հետևում են մեր կանոններին և պաՀպանում Հայրենի դավանա՞նքը: Այգպիսի վերաբերմունքն արդար չէ, ոչ էլ ձեզ Համար ձեռնտու, քանզի վատ օրինակ եք տալիս իշխանավորներին: Նախընտրելի է Հպատակների վրա իշխել կամավորության սկզբունքով, անբռնակալ, քան թե բռնությամբ ու ճնշմամբ»: Պատրիարքը դոժին կոչ է անում. «Կարգադրեցե՛ք որպեսզի այդ Հալածանքները ու փորձությունները դադարեն, թույլ տրվի մարդկանց իրենց սովորույթներին Հետևեն և Հավատքը դավանեն, այնպես, ինչպես կամենան: Ես դա արդար և օգտակար եմ Համարում և Հայտնում ձեր բարձրագույն իշխանությանը»:*

*Պատրիարքը որպես օրինակ բերում է սուլթան ՄեՀմետ II ՖաթիՀին և կանգ առնում Հայերի դեմ օրթոդոքսների գործած Հալածանքներին: «Եթե մեծ և բարձրագույն տերը,– գրում է նա Վենետիկի դոժին,– լինելով այլակրոն, քրիստոնյաններին, բոլորին ազատ է թողնում ունենալ սեփական դատողություն ու Հավատք և անցյալ տարի, երբ իմացավ, որ Մեծ Վալախիայում Հայերի վրա բռնանում են նրանց օրթոդոքս դարձնելու Համար, Հրա-*

---

233 MM, t I, pp. 158-164.
234 MM, t I., p. 161, 163.
235 *ՀաւաքումՆ Պատմութեան Վարդանայ վարդապետի. Վենետիկ, 1862, էջ 133: Կոստանդնուպոլսի պատրիարքի և կայսեր նամակների ամբողջական թարգմանությունը տե՛ս Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Նոր նյութեր Կիլիկիայի Հայկական պետության և Բյուզանդիայի փոխՀարաբերությունների մասին.– «Բանբեր Մատենադարանի», 1958, №4, էջ 285–295. (Հայ-բյուզանդական Հետազոտություններ. Հ. Ա, էջ 29–39):*
236 *Հավանաբար կաթոլիկ:*
237 *Իմա՛ Հույների:*

*ման արձակեց, որպես աստծո անբռնադատելի օրենք, և դադարեցրեց այնտեղ տեղի ունեցող Հայերի Հալածանքները, առավել ևս արդար է, որ դուք էլ այդպես վարվեք»*[238]*:*

*Մեծ Վալախիա էր կոչվում այն ժամանակ Հունաստանի Թեսալիա նահանգը. և վերոհիշյալ փաստաթուղթը Հստակ վկայում է XV դ. երկրորդ կեսին Թեսալիայում բազմամարդ Հայկական Համայնքի գոյությունը: Եթե նկատի ունենանք սրա նախորդող՝ 1276 թվակիր փաստաթուղթը, որում Թեսալիայի Դիմիտրիադա ծովափնյա վայրի դիմաց Արմենոնիսիի (Հայոց կղզու) առկայությունը, ապա այդ Համայնքը շատ Հին պիտի եղած լիներ:*

*Վերը շարադրվածով ավարտվում է Միկլոշիչ - Մյուլլերի կազմած և Հրատարակած Հունական 3000 փաստաթղթերի վեցՀատորյակում Հայոց պատմության Համար արժեքավոր նյութի՝ Բյուզանդական կայսրության տարածքում ապրած Հայոց և Հայկական վայրերի մասին առկա տեղեկությունների շարադրանքը: Ընթերցողը շատ լավ Հասկանում է, որ խոսքը վերաբերում է սոսկ այդ Հատորներում Հանդիպող նյութին: Խնդիրը ավելի ընդգրկուն կարելի է գլուխ բերել բյուզանդական բոլոր, բազում ու բազմաբնույթ աղբյուրների, նախ և առաջ արխիվային նյութի օգտագործմամբ միայն: Գլխավորապես նկատի ունենք Աթոս Սուրբ լեռան բազմաթիվ վանքերի արխիվային փաստաթղթերը, որ լույս են տեսել և շարունակում են լույս տեսնել: Այդ գործը կկատարվի, երբ Հնարավորություն կստեղծվի այդ նյութը ձեռքի տակ ունենալ:*

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐ

Անագնոստ - ἀναγνώστης. *բառացի նշանակում է ընթերցող: Եկեղեցու դպիրը, Հիշվում է սաղմոսերգուի Հետ: Մխիթար Գոշի Դատաստանագրքում բառը Հանդիպում է «անագանոս» ձևով:*

Անագրաֆևս - ἀναγραφευς. *Հարկատուների շարժական կամ անշարժ գույքի Հաշվառող, պետական կադաստրում դրանցող պետական ծառայող: Կային բանակաթեմային և մայրաքաղաքի անագրաֆևսներ:*

Բանակաթեմ - θεμα. *բյուզանդական ռազմաքաղաքական տարածք (նաՀանգ), որ կառավարվում էր զորավարի* (στρατηγός) *կողմից:*

Գենիկոն - γενικόν. *ֆինանսական ծառայություն, որը գլխավորում էր գենիկոնի լոգոթետը: ՀարկաՀավաքության ծառայություն էր:*

Գրամատիկոս - γραμματικος. *ուսուցիչ, քարտուղար (Հնում Հայերեն տառադարձված էր «գրամարտիկոս»):*

Դեէսիս - δέησις, *լրիվ կոչումը* ὁ ἐπὶ τῶν δεήσεων - *«Որ ի վերա աղերսագրաց»: Քննում էր և Կոստանդնուպոլիս ուղարկում կայսրին Հասցեագրված բոլոր Հայցադիմումները, խնդրագրերը, բողոքները: Նա մնում էր նաՀանգներում և մտնում կրիտեսների դասի մեջ:*

Դևտերևոն - δευτερεύων *(բառացի՝ երկրորդող, փոխարինող). Նախնական շրջանում Կոստանդնուպոլսի Հիմնական երկու կուսակցությունների՝ կապույտների և կանաչների դեմարքոսի օգնականը: Կային և եկեղեցում և պատվաստիճան էր, որ շնորՀվում էր քաՀանաներին և սարկավագներին:*

Էկլեսիարքես - ἐκκλησιάρχης. *վանաՀայրերի և տաճարների վերակացուների պաշտոն, որոնց պարտականությունն էր Հետևել ներքին կարգուկանոնին:*

Էկոնոմ - οἰκονόμος. *1) կայսերական կալվածքի վարիչ, 2) վանական տնտեսության վարիչ:*

Էքսոկատակիլի - ἐξωκατάκοιλοι. *Հինգ կղերականներ, որոնք կազմում էին Տիեզերական պատրիարքարանի և Հոգևոր սինոդի կենտրոնական վարչությունը:*

---

238 MM, t. V, pp. 281–285.

Էքսկուսիա - ἐξκουσσια. *Բյուզանդական իմունիտետ՝ հարկային, վարչական և դատական անձեռնմխելիություն:*

Լոգոթետ - λογοθέτης. *քաղաքացիական պաշտոնյա: Այդպես էին կոչվում սեկրետների վարիչները: Կային գենիկոնի, դրոմոսի, իդիկոնի, պրետորիոնի, ստրատիոտիկոնի, պատրիարքի,անասնահոտերի լոգոթետներ:*

Լոգոթետ *(դրոմոսի)* - λογοθέτης τοῦ δρομου. *հարկային պաշտոնյա, ընդհանուր առմամբ հարկահավաքության վերաբերող, տարբեր վարչությունների հաշիվներին վերահսկող:*

Լոգոթետ *(ստրատիոտիկոնի)* -λογοθέτης του στρατιωτικοῦ. *բանակի մատակարարման վարիչ:*

Լիզիոս կավալարիոս - λιζιος καβαλλάριος. *բարոնին ենթակա ձիավոր (ասպետ):*

Լոգարիաստես *(մեծ)* - μεγας λογαριαστης. *գենիկոնի լոգոթետին ենթակա ծառայող: Նրան ենթակա էին նաև նոտարները, խարտուլարները և այլք:*

Խարտուլար - χαρτουλάριος. *գենիկոնի լոգոթետին ենթակա պաշտոնյա: Քաղաքացիական ծառայող: Կազմում էին փաստաթղթեր, պահում հաշվապահական ռեգիստրներն ու դրքերը (հայերեն «քարտուղար» բառը սրա տառադարձությունն է):*

Խարտոֆիլաքս - χαρτοφύλαξ *(թարգմանաբար նշանակում է թղթապահ). Կոստանդնուպոլսի պատրիարքի դիվանապետ: Նրան վստահում էին նաև օտար պետությունների հետ բանակցություններ վարելը:*

Խրիսովուլ - χρυσόβουλλον. *կայսեր ոսկե կնիքը կրող և նրա կողմից կարմիր թանաքով ստորագրված փաստաթուղթ: Հայկական միջնադարյան աղբյուրներում «ոսկէ մատանի», բայց և «խռսովոլոն», «կնիք ոսկեղէն»:*

Կանիկլիոս - κανικλειος. *կայսերական քարտուղարության պաշտոնյա: Նրան էր վստահված կայսերական կարմիր թանաքով (կինոբար) թանաքամանը: Նա ստուգում էր կայսերական փաստաթղթերի բովանդակությունը:*

Կրիտես - κριτης. *արդարադատության պաշտոնյա, դատավոր: Կային երկու կրիտես՝ վելոնի և հիպպոդրոմի: Վելոն լատիներեն նշանակում է վարագույր, որով ծածկում էին դատավորներին՝ հասարակությունից: Նրան հիշում է Մխիթար Գոշը «կրիտք» ձևով:*

Հիերոմոնախ - ιερομοναχος. *վանական, որ ձեռնադրված է քահանա և որպես այդպիսին իրավունք ունի եկեղեցում սպասավորելու:*

Մեսազոն - μεσάζων. *բառացի նշանակում է «միջնորդ»: Բյուզանդական արքունիքի բարձրաստիճան պաշտոնյա:*

Մետոխիոն - μετόχιον. *վանքին պատկանող, բայց նրա շրջանից դուրս գտնվող կալվածք:*

Մոդ - μοδιον. *1) սորուն մարմինների չափ, 2) հողային տարածքի չափ, 0,084 հեկտարին հավասար: Կային տարբեր չափսի մոդեր:*

Նոմիկոս - νομικός *կամ տաբուլարիոս* - ταβουλαριος. *Կոստանդնուպոլսի քաղաքապետի (էպարքոսի) ենթակա իրավական ֆունկցիաներ ունեցող պաշտոնյա:*

Նոտար - νοταριος. *կայսերական, կենտրոնական գրասենյակի գրքերի պահողը: Ենթարկվում էր սակելլարիոսին: Կար և պրոտոնոտարիոս՝ առաջին նոտար:_Նույնանում է գրամմատիկոսին:*

Պանիպերտիմոս - πανυπέρτιμος *(նաև՝* υπέρτιμος*). ուղղափառ եկեղեցու առանձին մետրոպոլիտների պատվաստիճան:*

Պարակիմոմենոս - παρακοιμόμενος. *կայսեր սենեկապետը: Երբեք հոգի էին լինում: Որպես կանոն ներքինիներ էին, թեև Վասիլ I կայսրը, նախքան գահին տիրանալը պարակիմոմենոս էր, բայց ունեցավ չորս որդի և դստրեր:*

Պարիկոս - παροικος. *Բյուզանդիայի կախյալ գյուղացիության հիմնական կատեգորիան: X–XI դդ. կային պետական և մասնավոր սեփականատերերի պարիկոսներ: Նրանք*

հողին ամրացած չէին, ֆեոդալներին հարկ էին վճարում և կատարում բազում այլ պարհակներ:

Պինկերնես - πιγκερνης. կայսեր կամ կայսրուհու մատռվակը:

Պիտակիոն - πιττάκιον. գիր, հրովարտակ, թուղթ: Բառը հանդիպում է և հայկական աղբյուրներում:

Պրակտոր – πράκτωρ. հարկահավաք:

Պրիմիկերիոս - πριμμικηριος. ստորին հոգևորականության (կիսասարկավագից ցած) վերակացուն: Ե՛վ պաշտոն էր, և՛ պատվաստիճան:

Պրոաստիոն - προαστειον (հայկական աղբյուրներում պռաստ, պռաստին, պռաստնոց). Հին Հունաստանում նշանակել է քաղաքի արվարձան: Միջնադարում դա կալվածք էր, որտեղ, որպես կանոն, բնակվում էին ոչ թե վերջինիս տերերը, այլ նրանց ենթակա մարդիկ՝ ստրուկներ, վարձակալողներ և ուրիշներ:

Պրոսկաթիմենոս - προσκαθημενος (բայը նշանակում է «նստել», «նստած). ֆեոդալի կալվածքի վրա նստած և կախման մեջ գտնվող եկվոր գյուղացի:

Պրոտեկդիկոս - πρωτεκδικος. առաջին (գլխավոր) էդիկտոսը՝ եկեղեցու պաշտոնյա, որ ներկայացնում էր եկեղեցին և պաշտպանում վերջինիս իրավունքները: Նրանցից առաջինը կոչվում էր պրոտեկդիկոս:

Պրոտոասեկրետ - πρωτοασηκρητης. դարերի ընթացքում նրա պաշտոնը կրեց փոփոխություններ: IX–X դդ. նա գլխավոր քարտուղարն էր, կազմում ու խմբագրում կայսերական փաստաթղթերը: Նրա գրասենյակը բաղկացած էր ասեկրետներից, նոտարներից և դեկանոսներից:

Պրոտոմանդատորիկոն – πρωτομανδατορικον. առաջին (գլխավոր) մանդատորի («լրաբերի») ծառայությունը: Մանդատորները ծառայում էին զորավարների, դոմեստիկոսների, լոգոթետների գերատեսչություններում, հատկապես նավատորմիղում:

Պրոտոնոտար - πρωτονοτάριος. բանակաթեմի քաղաքացիական վարչության պատասխանատու պաշտոնյա զորավարին ենթակա, բայց և հաշվետու ուղիղ Կոստանդնուպոլսին: Այդպիսին ուներ և Կոստանդնուպոլսի պատրիարքը:

Պրոտոսինկելոս - πρωτοσύγκελλος. սինկելոսների վերակացուն, պատրիարքի խորհրդականը: Եկեղեցական բարձր պաշտոն էր: Նրա պարտականությունն էր կայսեր ու պատրիարքի միջև կապ պահպանելը: Ենթարկվում էր պրոեդրոսին և պրոտոպրոեդրոսին:

Պրոտոստրատոր – πρωτοστράτωρ. կայսեր ախոռապետը, ստրատորների զորամասի պարագլուխը, որոնց սկզբնական պարտականությունն էր օգնել կայսեր ձի հեծնելու: Վասիլ I կայսրը նախապես եղել է ստրատոր, ապա պրոտոստրատոր: Պալեոլոգների օրոք դարձավ ամենաբարձր աստիճաններից մեկը և հավասարազոր էր արևմտյան մարշալներին:

Սակելար - σακελλάριος. բյուզանդական եկեղեցու հինգ աստիճանավորներից՝ էքսոկատակիլներից մեկը: Հիմնականում երեցի կոչում ուներ, հետևում էր վանական իրավունքի պահպանմանը, վարում եպիսկոպոսական գանձարանի տեսչությունը և վանականների փոքր զանցանքների դատումը:

Սեկրետ - σέκρετον (և սեկրետիկոս - σεκρετικός). վարչություն, ծառայություն, քարտուղարություն, որպես կանոն՝ Տիեզերական պատրիարքարանի: Լայն իմաստով այդպես էին կոչվում քաղաքացիական բոլոր պաշտոնյաները, ներառած դատավորներին և բանակի քաղաքացիական պաշտոնեությունը: Նեղ իմաստով՝ ֆինանսական պաշտոնյաներ էին:

Սևաստոս - σεβαστός. սկզբնական շրջանում բառը լատիներեն augustus-ի թարգմանությունն էր և այն տրվել էր Օկտավիանոս կայսեր: Հետագայում՝ X–XII դ. տրվում էր բյուզանդական արքունիքի բարձրաստիճան անձանց և դարձավ պատվաստիճան:

Սիգել - σιγίλλιον. եկեղեցական իշխանության կնիք և լայն իմաստով՝ ընդհանրապես կնիք: Լատիներեն բառ է, որ հանդիպում է և հայ մատենագրության մեջ՝ «սիգէլ» ձևով:

Սկևոֆիլաքս - σκευοφύλαξ. *բյուզանդական եկեղեցական սպասքի պահապան նշանակված պաշտոնյա: Կար Մեծ սկևոֆիլաքս, որ մեծ տաճարներում հինգ էքսոկատակիլներից մեկն էր:*

Սոլեմնիա - σολέμνια. *բանկաթեմերի գանձարանից ամեն տարի վանքի կամ այլ հոգևոր հաստատության օգտին տրվող նյութական և դրամական օժանդակություն:*

Ստրատելատ - στρατηλατης. *զինվորական բարձր աստիճան, սպարապետ: Կոչվում էր նաև* στρατηγος αὐτοκράτωρ, μονοστράτηγος *(ինքնակալ զորավար, միահեծան զորավար):*

Ստրատոպեդարխ - στρατοπεδαρχης. *բառացի նշանակում է արշավանքի դուրս եկած զորքի հրամանատար: Կային Արևելքի և Արևմուտքի ստրատոպեդարխներ:*

Ստրեմա -_στρεμα. *1000 $մ^2$ հողային տարածություն:*

Սֆենդոնե *(մեծ)* - μεγαλη σφενδόνη. *կայսեր կնիքը: Այն պահողը ուներ պարակիմոմենոսի աստիճանը:*

Վելոն - βῆλον *(լատ.* velum). *բառացի նշանակում է «վարագույր»: Խոսքը* velum-*ի կրիտեսներին է վերաբերում: Նրանք տասներկու հոգի էին:*

Տաբուլար - ταβουλλάριος. *տե՛ս նոմիկոս:*

Վեստիարիտես - βεστιαριτης *(կամ վեստիտոր -* βεστιτωρ). *օգնում էր կայսրին հանդերձները հագնելուն: Նրան հիշում է և Մխիթար Գոշն իր Դատաստանագրքում «վեստիտորայն» ձևով:*

Օֆֆիկիոն - οφφίκιον. *հատուկ նշանակում է պաշտոն, ֆունկցիա:*

## СРЕДНЕВЕКОВЫЕ ГРЕЧЕСКИЕ АРХИВНЫЕ ДОКУМЕНТЫ О ПРИСУТСТВИИ АРМЯН НА ТЕРРИТОРИИ ВИЗАНТИЙСКОЙ ИМПЕРИИ (XI–XIV вв.)

*РАЧ БАРТИКЯН*

Р е з ю м е

Об армянах в Византийской империи написано немало, но посвященные им труды касаются главным образом деятелей господствующего класса (императоры, патриархи, военные, гражданские, административные лица, деятели культуры и науки и т.п.). Среди трех тысяч разного содержания документов, в основном касающихся земельной и другой собственности, купли-продажи недвижимости, изданных в монументальном шеститомнике Франциска Миклошича и Йозефа Мюллера, встречаются и такие, в которых упоминаются и рядовые армяне, их поселения по всей территории империи (Константинополь, запад Малоазийского полуострова — Смирна, Милет — острова Эгейского и Адриатического морей, Македония, Фессалия, Эпир). В статье приведены данные о них.

# MEDIEVAL GREEK ARCHIVAL DOCUMENTS ABOUT THE PRESENCE OF ARMENIANS ON THE TERRITORY OF THE BYZANTINE EMPIRE (the 11th – the 14th centuries)

*HRACH BARTIKYAN*

S u m m a r y

It was written a lot about the Armenians in the Byzantine Empire, but the investigations mainly concern the representatives of the ruling classes (emperors, patriarchs, military men, civilians, administrators, artists and scientists, etc.). Among three thousand documents of different contents in general relating the land and other property, real estate purchase-sale, published in Franciscus Mikloshich's and Iosephus Müller's six-volume monumental edition there are some, in which common Armenians, their settlements all over the Empire's territory are mentioned (Constantinople, West of the Asia Minor - Smyrna, Miletus - islands of the Aegean and Adriatic seas, Macedonia, Thessalia, Epirus). The facts about them are presented in the article.